# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ



## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Սոցիալիստական և կոմունիստական շինարարությանը ցույց տված ակտիվ մասնակցության, երիտասարդության դաստիարակության ասպարեզում կատարած բեղմնավոր աշխատանքի համար ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆԸ պարգևատրել ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ շքանշանով:

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Լ. ԲՐԵԺՆԵՎ**

**ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ**

*Մոսկվա, Կրեմլ, 10 օգոստոսի 1981 թ.*

60 ՏԱՐԻ

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆ ՏՈՄՍ

Քսանական թվականների կոմերիտական տոմսերում, որոնք տարբեր էին, բայց հավասարապես թանկ էին նրանց կրողների համար, տպագրվում էր հեղափոխական պատանեկության հիմնը՝ «Երիտասարդ գվարդիա» երգի տեքստը: Տոմսի էջերում Վ. Ի. Լենինի ՌԿԵՄ երրորդ համագումարում արտասանած ճառից մեջբերումներ էին տպագրված: 1921 թվականին կոմերիտմիության Կենտրոնական կոմիտեն որոշեց Պետերբուրգի կազմակերպության տոմսի օրինակը ընդունել որպես հիմք ամբողջ կոմերիտմիության համար: 1924—1925 թվականներին փոխանակվեցին տոմսերը: Կազմի վրա տպագրվեց Վ. Ի. Լենինի պատկերը, ձևը դարձավ ընդհանուր, բայց հրատարակումը մնաց տեղայնացված:

1932 թվականին 3 միլիոն կոմերիտականներ նոր տոմսեր ստացան: Տոմսի համարը արդեն տպագրվում էր, և համարակալումը համամիութենական էր: Տոմսերը պատրաստվում էին միայն Մոսկվայում:

1938 թվականին կայացավ տոմսերի փոխանակում: Կազմը դարձավ պողպատագույն, առաջին էջում հայտնվեց Կարմիր դրոշի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանների պատկերումը: Առաջին անգամ տեղ հատկացվեց տոմսը կրողի լուսանկարին:

Սոցիալիզմի ծավալուն կառուցման պայմաններում կրկին տոմսերի փոխանակման անհրաժեշտություն առաջացավ: 1956 թվականին հին տոմսը փոխարինվեց նորով, որը մուգ կարմիր կազմ ուներ և նախորդ շքանշանների կողքին՝ Լենինի երկու շքանշան: Հետագայում, երբ կոմերիտմիությունը խոպան հողերը նվաճելու համար ստացավ երրորդ Լենինի շքանշանը, տոմսի մեջ պատկերվեցին հինգ շքանշաններ: 1968 թ. կոմերիտմիությունը պարգևատրվեց ևս մեկ՝ Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանով: 1975 թվականի վերափոխված տոմսը իր կազմի վրա արդեն չունի միութենական հանրապետությունների անվանումը: Կա միայն միասնական անվանում՝ ռուսերեն լեզվով:

Կոմերիտական տոմսը փաստաթուղթ է, որ հաստատում է պատանու և աղջկա պատկանելությունը Համամիութենական լենինյան երիտասարդական միությանը, վկայում է յուրաքանչյուր անդամի և ամբողջ կոմերիտմիության համախոհությունն ու նվիրվածությունը Վլադիմիր Իլյիչ Լենինի անվանդներին, կոմունիստական կուսակցության գաղափարներին և քաղաքականությանը:

1921-1981



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

## ՁԱՆԳԱԿԱԾԱՂԻԿ

Նոր ես ծնվել դու,
Զանգակածաղիկ,
Ցնծում ես, ժպտում,
Հովերից մեղմիկ:

Արևի տակ ջերմ
Սոսափում կամաց,
Աչիկներդ ջինջ
Զարմանքով բացած:

Իսկ արևն հրկեզ
Իր ջերմ շողերից
Պարգևում է քեզ,
Որ դու, սիրելիս,
Ժպտաս նրա պես...

ՌՈՒԶԱՆՆԱ ԲԱԼԱՅԱՆ
Էջմիածնի շրջանի Գրիբոյեդով գյու-
ղի դպրոց, 8-րդ դասարան

## Ա՜Խ, ԻՆՉ ԼԱ՜Վ Է...

Ա՜խ, ինչ լա՜վ է,
Ի՜նչ ուրախ եմ,
Թև եմ առնում ու թռչում:
Թռչում բա՜րձր,
Բա՜րձր երկինք՝
Աստղերի մեջ սավառնում:

Ու վերևից
Նայում. ներքև,
Հմայվում եմ ներքևով...
Ա՜խ, ինչ ղա՜վ է
Կյանքը պայծառ՝
Լցված երգ ու
Երազով...

ԳՈՀԱՐ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ
Երևանի № 74 միջն. դպրոց, 10-րդ
դասարան

ՀԼԿԵՄ 60 

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆՆԵՐԸ

## ՄԻ ԿԱՐՄԻՐ ՏԵՐԵՎ

Հրավառվում էր աշնան խաշամը
Քո ոտքերի տակ,
Հրավառվում էր աշնան խաշամը
Քո աչքերի մեջ,
Եվ կապույտ բոցը
Ծիածանվելով երկինք էր ելնում,
Խառնում գույները իմ երազների:
Հետո գլուխը ափերում առած
Խենթի պես մոլոր
Նա թափառում էր
Իմ վառվող աշնան պատկերների մեջ...
Գունաթափվել է աշնան խաշամը,
Բայց դեռ վազում է
Անձրևոտ աշնան լաբիրինթոսում,
Խշշում է տխուր
Մերկ ուռիների ճյուղերի միջով,
Իսկ ես սեղմում եմ իմ բռունցքի մեջ
Մի կարմիր տերև:



## ՈՐ ԵՍ ՀԱ-ՎԱ-ՏԱՄ

Երբ դու ժպտում ես,
Ես միշտ զգում եմ իմ երակներում
Մակընթացությունն օվկիանոսների,
Որ շառաչում է
Եվ փրփուրներով քեզ է նկարում
Կապույտի վրա:
Երբ դու ժպտում ես,
Իմ անապատում հողմերն են զարթնում
Դաղում կողերը ժայռաբեկորի
Եվ գալարվում են
Ծեկ ավազների հորիզոններում:

Չեմ տեսնում ոչինչ,
Ես խարխափում եմ
Պտուտահողմի պարույրների մեջ,
Իսկ պարույրները քեզ են նկարում:
Դե, ժպտա՛ նորից,
Որ ես հավատամ ընկնող աստղերին,
Որ ես հավատամ
Անապատների սուտ միրաժներին
Ու քեզ նկարեմ
Իմ գիշերների և ավազների
Տաք ֆոնի վրա:

ԱՐՄԵՆ ԴԱՎԹՅԱՆ

Երևանի № 139 դպր. 10-րդ դասարան



# ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԾՆՈՒՆԴ



1917 թվականի փետրվարյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո Ռուսաստանի արդյունաբերական խոշոր կենտրոններում բոլշևիկների նախաձեռնությամբ և ղեկավարությամբ սկսեցին ստեղծվել երիտասարդական միություններ:



Հայաստանի քաղաքների և գյուղերի առաջադեմ երիտասարդությունը նույնպես փորձեց ստեղծել իր խմբակներն ու միությունները: Այսպես՝ Ստ. Շահումյանի խորհրդով Լոռու Հաղպատ գյուղում ստեղծվեց երիտասարդական խմբակ: Աշակերտական գաղտնի խմբակներ ստեղծվեցին Երևանի թեմական դպրոցում, Կարսի, Ալեքսանդրապոլի և այլ բնակավայրերի դպրոցներում:



1917 թ. դեկտեմբերի կեսերին ստեղծվեց Երևանի մարքսիստական աշակերտական միությունը, որի կազմի մեջ մտան նաև Երևանի ռուսական արական գիմնազիայի և այլ դպրոցների բարձր դասարանների աշակերտ-աշակերտուհիներ: Միությունը



*ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ*

Նոյեմբերի վերջն էր, գրեթե ձմեռ: Տեղացող անձրևներից ու քամուց ծառերը համարյա մերկացել էին: Դեղնակարմրավուն տերևներով լցվել էր ողջ այգին: Վարդի թուփն էր միայն կանաչ-կանաչ: Նրա վրա դեռ հեռվից կարմրին էին տալիս երկու կոկոն, երկու մեծ կիսաբաց կոկոն:

Վարդենին կողքի մասրենուն նայում էր վերից: Մասրենին ասես քամուց պաշտպանելու համար վերջին մի քանի դողացող տերևները, սուր-սուր փշերը ցցել էր:



— Տեսնու՞մ ես, ես միշտ դալար եմ, միշտ կանաչ, ձմեռն անգամ ուրախացնում եմ մարդկանց իմ տեսքով ու վարդերով, իսկ դու չոր ճյուղերդ ես արդեն թափահարում քամուց,— ասաց վարդենին մասրենուն:

Մասրենին տխուր քմծիծաղով նայեց նրան վարից վեր.

— Դու մոռացել ես, որ ցրտադիմացկուն դարձար ինձ վրա պատվաստվելու շնորհիվ...



# ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԾՆՈՒՆԴ

ղեկավարում էր Ղուկաս Ղուկասյանը:

●

1918 թ. հոկտեմբերի 20-ից մինչև նոյեմբերի 4-ը Մոսկվայում կայացավ բանվորագյուղացիական երիտասարդական միությունների համառուսաստանյան առաջին համագումարը, որը հիմնադրեց Ռուսաստանի կոմունիստական երիտասարդական միությունը (ՌԿԵՄ):



●

1919 թ. ապրիլին Երևանում հրավիրվեց մարքսիստական աշակերտական միության ժողովը և միությունը վերանվանվեց «Երիտասարդ սոցիալիստ-ինտերնացիոնալիստների «Սպարտակ» միություն»:



●

1919 թ. մայիսի 1-ին լույս տեսավ միության օրգան «Սպարտակ» թերթը, որը առաջին կոմերիտական թերթն էր Հայաստանում:

●

Հայաստանի կոմերիտմիության առաջին համագումարը տեղի ունեցավ 1921 թ. օգոստոսի 21-ին Երևանում: Հենց այդ օրն էլ համարվում է Հայաստանի կոմերիտմիության ծննդյան օրը:





ՊԻՈՆԵՐ-ի փոստից

# ԻՐԱՎԱՑԻ՞ ԷՐ ԼՈՒՍԻՆԵՆ

Մի անգամ ընկերս իրենց դասարանում պատահած մի այսպիսի դեպք պատմեց.

«Երրորդ քառորդի վերջին օրերն էին: Հայոց լեզվի ժամ էր: Գրում էինք ստուգողական թելադրություն: Թելադրությունը վերջացնելուց հետո ուսուցչուհին խնդրեց Արմենին հավաքել տետրերը: Վերջին նստարանին նստող Լուսինեն կասկածում էր՝ ինքը ճիշտ է գրել «լուցկի» բառը, թե ոչ, և ստուգելու համար հարցրեց Արմենին: Արմենը պատասխանեց, որ ինքը գրել է «լուծկի»: Լուսինեն բացեց իր տետրը և «լուցկին» դարձրեց «լուծկի»: Հաջորդ օրը, երբ ուսուցչուհին բերեց տետրերը, երեխաները տեսան իրենց սխալները: Արմենը և Լուսինեն 4 էին ստացել: Դասամիջոցին Արմենը մոտեցավ Լուսինեին և ներողություն խնդրեց սխալ ասած բառի համար: Բայց Լուսինեն վիրավորված շուռ տվեց երեսն ու դուրս եկավ դասարանից»:

— Իրավացի՞ էր Լուսինեն,— հարցրեց ընկերս:

Դժվարացա պատասխանել:

Նույն հարցն ուզում եմ ձեզ տալ՝ իրավացի՞ էր Լուսինեն:

*ԱՇՈՏ ԳԱԼՍՏՅԱՆ*
*Աշտարակի № 4 միջն. դպրոց, 8-րդ դասարան*

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

# Պապիս թախտը

Գարուն է: Հիվանդ պապս անկողնուց վեր է կացել և ուշադրություն չըդարձնելով տնեցիների խեթ հայացքներին՝ շորերն է հագնում, որ բակ իջնի: Ամենից շատ ուրախացել ենք մենք՝ փոքրիկներս: Ուրախացել ենք, որովհետև գարուն է, որովհետև առանց թախտին պառկած, արևի տակ տաքացող, համրիչը ձեռքին պապի, այգում ինչ-որ բան պակաս է, ու հիմա այդ պակասը լրանում է: Պապը մոտենում է թախտին, ցավով նայում նրա խարխլված ոտքերին ու մոտիկ կանչում ինձ.

— Վազե՛ մեխ ու...

— Մու՛րճ, պապի՛,— շտապ վրա եմ բերում ես:

— Հա՛, մու՛րճ, լա՛ո, մու՛րճ:

Ու մինչև ես մուրճն ու մեխերը ձեռքիս կվերադառնամ, նա վերցնում է կանաչած թթենուն հենած բահը ու ընկըսում թախտի մոտերքից մաքրել աշնանը հավաքված խաշամը: Տերևների ծածկոցից ազատված հողը տաք գոլորշի է արտաշնչում: Պապը չոքել է, տաք ձեռքերը դրել տաք հողին ու ինչ-որ բան է շշնջում: Ես վստահ մոտենում եմ թախտին, գետնին դնում մեխերը, ապա մի մեխ ու մուրճը ձեռքիս շտապում առաջ:

— Քո բանը չէ՛, մա՛նչ,— պապը հևոցով ձեռքիցս շտապ խլում է մեխն ու մուրճը:

Ապա մեխը կիսով չափ ամրացնում է պատահական մի տախտակի ու մուրճը ցած դնում: Հետո ձեռքը դանդաղ տանում և գրպանների լաբիրինթոսից հանում է թաշկինակում փաթաթված թութունով լի քսակն ու նվիրական ծխամորճը: Դանդաղ, հանդիսավորությամբ ծխամորճը լցնում է թութունով ու տանում դեպի բերանը: Երանությամբ մի քուլա է բաց թողնում, սկսում խորհել անցյալ ինչ-ինչ բաների մասին:

— Պապի՛, թո՛ղ մեխը խփեմ,— մեջ եմ ընկնում ես:

Պապը դժգոհությամբ նայում է ինձ ու դեռ ինչ-ինչ բանի մասին մտածելով, բարձրացնում մուրճը: Հարված, և ցավից տնքում է մատը: Պապը մի կողմ է դնում մուրճը, սեղմում վնասված մատը ու ծխի քուլաներ բաց թողնում.

— Էս չիբուխ, լաո՛, իմ համար կյանքիս պես թանկ է: Էս չիբուխ իմ քաջ զորավար Անդրանիկի նվերն է: Իր ճերմակ ձիուն վրա նստած կծխեր ու կծխեր: Ու մի օր տվեց ինձի: Տվեց ու ասաց. «Առ պահե՛, կպահես մինչև մեր սուրբ վաթան ազատենք ու կենդանի մնանք»:

— Է՛հ, պապի՛,— թերահավատորեն առարկում եմ ես, լսելով նրա հազար անգամ ասածը,— զորավար Անդրանիկի չիբուխը ես թանգարանում եմ տեսել:

— Դու իմ հոգու հետ մի՛ խաղա, լաո՛,—դանդաղ պատասխանում է մի փոքր սրտնեղած պապը,— ըսածդ ի՞նչ է, մեծ մարդ էր, կըլնի որ մի քանի չիբուխ ունենար:

— Հա, կարող է,— ասում եմ ես, որոշելով խնայել նրան:

Պապը մի երկու տախտակ է ամրացնում թախտին.



— Աշխարքը երեք բանից ա շինած. մարդու սրտից, ձեռներից ու բահից: Չարսիրտ մարդոց ձեռքին բահը հրացան է դառնում: Աշխարքի կեսը չար ա, կեսը՝ բարի: Հենց որ չարը մի մարդով ավելացավ, աշխարք կքանդի:

Պապը տնքալով բարձրանում է խարխուլ թախտին ու շարունակում առանց որևէ մեկին դիմելու.

— Էս աշխարքում ոչ մի թախտ հաստատ չի:

Պապը նորից թութուն է լցնում չիբուխի մեջ ու շարունակում.

— Մենակ երկինքն ա սուրբ ու հողը: Ուրիշ հաստատ թախտ չկա...— Ու կարծես ի հաստատումն այդ խոսքերի, ճռնչյուն-թնդյունով փլվում է տասնյակ տարիներ առաջ շինված ու հենց նոր նորոգված թախտը և փտած տախտակների ու փալասների մեջ անհետանում է պապը:

Դեպի մեզ են վազում խուճապահար տնեցիները: Նրանք նետվում են դեպի թախտը, մի քանի տախտակ դուրս քաշում ու հանկարծ երկյուղած ետ քաշվում: Հայրս՝ Անդրանիկի քաջ զինվորի թոռը, խոնարհում է գլուխը:

... Խոնավ հողից տաք գոլորշիների հետ քուլա-քուլա բարձրանում էր Անդրանիկի չիբուխի սպիտակ ծուխը ու ամպում կանաչ թթենու գլխավերևը:

*ՎԱՀԵ ԳԱԲՐԻԵԼՅԱՆ*

*Երևանի № 139 դպրոց, 10-րդ դասարան*

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆԸ
Հայաստանի կոմերիտմիության մրցանակին է արժանացել քիմիայի բնագավառում կատարած հայտնագործության համար: Այս հոդվածում, սակայն, խոսվում է նրա ոչ այդ, այլ մի ուրիշ հայտնագործության մասին, որ կարելի է կոչել հեքիաթանման, ֆանտաստիկ:



# ԵԹԵ ԻՐՈՔ ՔԱՋ ԵՍ...

Ծնվել է Լոռվա Վարդաբլուր գյուղում, որի մերձակայքում շատ քարանձավներ կան:

Պատերազմը նոր էր վերջացել, բայց երեխաները դեռ շարունակում էին կռիվ-կռիվ խաղալ և նրանց ամենասիրած խաղատեղը գյուղամերձ քարանձավներն էին: Մեծերը պատմում էին, որ 1918 թվականին Անդրանիկը եկել է իրենց գյուղը, ժողովրդին զենք է բաժանել, բայց թշնամու գերակշիռ ուժերի պատճառով որոշել են չդիմադրել և զենքը տարել, քարանձավներում պահել են: Պատմում էին, որ հրացանները հիմա էլ այնտեղ են: Եվ երեխաները քարանձավների, ձորերի մեջ զենք էին փնտրում:

Ինը տարեկան էր Էդիկը, երբ իմացավ, որ ալպինիստները քարայրներից հին գրքեր են գտել: Սկսեց իր խաղընկերների հետ նաև գրքեր փնտրել: Փնտրում էին ամենաանմատչելի քարանձավներում: Հեռուստացույց դեռ չկար , թերթերում ալպինիստի նկար չէին տեսել: Միայն լսել էին, որ նրանք պարաններով անդունդներն են իջնում: Իրենք պարան չունեին, իջնում էին մետաղալարով:

Դպրոցն ավարտեց, եկավ Երևան, համալսարանում սովորելու: Գտավ Հայաստանում եղած հատուկենտ ալպինիստներին: Գոյություն ուներ ալպինիզմի մի խմբակ: Ընդունվեց այդ խմբակը, սկսեց պարապել: 1972 թվականին



Երևանում ժայռագնացների առաջնության մրցումներ անցկացվեցին: Էդիկը գրավեց առաջին տեղը: Երկու տարի անց, ավարտեց ալպինիզմի մարզիչների համամիութենական դպրոցը և համալսարանում ալպինիստների խումբ կազմակերպեց: Շատ դժվար էր այդ խումբը պահել: Չէր ֆինանսավորվում, իսկ գործն այնպիսին է, որ փող է պահանջում: Դժվարությունները մի կողմից դրական դեր խաղացին: Խումբը մաղվեց, մաղվեց և մնաց այնպիսի կորիզ, որն էլ ինչ անեիր, ինչ պատով տայիր՝ չէր փշրվի: 1978 թ. Մատենադարանի աշխատակիցները խնդրեցին Էդիկին ու իր ալպինիստ ընկերներին Հայաստանում շրջելիս հետաքրքրվեն՝ իմանան, թե որտե՞ղ, ո՞ւմ մոտ հին ձեռագրեր կան և տեղյակ պահեն իրենց: Մոտավորապես 50 ձեռագրի տեղ իմացան: Մատենադարանի դիրեկտոր ընկեր Խաչիկյանը մի օր էլ կանչեց նրանց և ասաց. «Ես հին ձեռագրերում կարդացել եմ, որ Քոբերի ու Հաղպատի քարայրներում ձեռագիր մատյաններ կան պահված: Խնդրում եմ փնտրեք, եթե կարող եք գտեք»: Գործուղեց հինգ հոգու: Այդ այնպիսի մի նվիրական գործ էր, որ խանդավառեց բոլոր ալպինիստներին: Հինգի փոխարեն որոնումների գնացին տասներեք հոգով: Մեկ շաբաթվա ընթացքում 4 քարայրներից հանեցին ձեռագրերի շատ մնացորդներ, 13—14-րդ դարերի բազմաթիվ գործիքներ, կմախքներ, մանրանկարի (լավ պահպանված) մի ամբողջական էջ, որը հազար տարի գետնի տակ էր մնացել, ու երբ հանեցին, ուկու պես փայլ արձակեց: Անմատչելի քարանձավներում գտան երկու արվեստանոց: Մեկում, երևում է, մագաղաթներ էին պատրաստելիս եղել, մյուսում՝ մագաղաթների վրա գրելիս եղել: Մինչ այդ Էդվարդը շատ գրքեր էր կարդացել, հատկապես ֆրանսիական անձավների մասին: Բայց Հայաստանում բոլորովին ուրիշ է: Ֆրանսիական քարայրները ծայրեծայր պեղես, գիրք չես գտնի: Այդ ֆրանսիացիների բախտավոր ճակատագրից է, նրանց բախտը բերել է: Գրքերը թշնամուց թաքցնելու կարիք չեն ունեցել:

Հայրենասեր երիտասարդները իրենց ուսումնասիրությունը սկսել էին հրաբխային անձավներից, որոնք հրաբխային ապարների մեջ են և սովորաբար խորը չեն: Բայց մեծ մասամբ անմատչելի տեղերում են գտնվում, իսկ Հայաստանում՝ ուղղակի բացառիկ անմատչելի տեղերում: Շատ էին ուզում զբաղվել խորը, կարստային՝ կրաքարերի մեջ առաջացած քարանձավներով: Երկրաբանները ու աշխարհագրագետները նրանց որոնումների մասին իմանալով, ծիծաղում էին:

— Գրականություն նայեք,— ասում էին,— բավականին գրականություն կա, կարդաք, կիմանաք, որ Հայաստանում մեծ քարայրներ չկան, չեն կարող լինել:

Գիտնականները շատ լավ բացատրում էին, թե ինչո՞ւ այդպիսի քարանձավներ Հայաստանում չկան, չպիտի լինեն, չեն կարող լինել: Բայց երիտասարդ էնտուզիաստները փնտրում էին, և նրանց փնտրելը ավելի շուտ չգիտենալով կարելի էր բացատրել. «Հայաստանում ստալակտիտներ կա՞ն: Ի՞նչ եք ասում»,— գիտեցողները հեգնում էին նրանց:

Հրաբխային անձավների հարցը հեշտ էր: Տղաները ժայռերն էին մագլցում, որպես ալպինիստներ, և դա հասկանալի էր, ընդունվում էր որպես մարզում: Իսկ կարստային քարանձավներ մտնելը ալպինիստի համար հոգեբանորեն

դժվար էր։ Ինչևիցե, այդ արգելքը նրբանք հաղթահարեցին, և 1978 թվականին սկսեցին Եղեգնաձորի Մագիլի մեծ քարանձավը նվաճել։ Այդ անձավում ստալակտիտներ էր հայտնաբերել դեռևս 1971 թվականին որսորդ Մագի-

Տղան մի կտոր պոկում, լիզում է։

— Սառնություն չունի, քարի նման է,— քարանձավից հաղորդում է ընկերը։

Քսան տարեկան էր Էդվարդը, որ կարդաց ստալակտիտների մասին, բայց



լը, որի անունով էլ տղաները կոչեցին անձավը։ Բայց ուրիշ բան՝ որսորդի հայտնաբերելը, ուրիշ՝ գիտնականինը։ Ժողովուրդը կարող է մի բան իմանալ հազար տարուց ի վեր, բայց գիտությանը, գիտնականներին հայտնի չլինի։ Տղաներից նա, ում վիճակվում է առաջինը մտնել «Զրնգուն վիհ» քարանձավ, թեև տեսնում, բայց անմիջապես չի հասկանում, որ տեսածը ամենախիկական ստալակտիտ է։ Նա հեռախոսով հաղորդում է (վիհերը իջնելիս հեռախոս են տանում հետները)։

— Այստեղ սառույց կա։

— Լսիր,— վերևից հարցնում է Էդվարդը,— ամառվա կեսին սառույցն ի՞նչ գործ ունի։ Ապա մի լիզի՛ր։

չէր տեսել։ Տեսնելու բախտը նրան և իր ընկերներին առաջին անգամ վիճակվեց այժմ։

«Մագիլի» քարանձավի «դահլիճներից» մեկի պատերը ամբողջովին ստալակտիտներով էր պատած։ Երբ «բլիցով», որն ուժեղ լույս է արձակում, փորձեցին նկարել, ինչ-որ ֆիզիկական պրոցեսների շնորհիվ, պատերը լույսը կլանելով ետ արձակեցին։ Այդ լույսի տակ մոտավորապես մեկ րոպե կարելի էր թերթ կարդալ։ Այդ լույսի տակ էլ հենց նրանց ներկայացավ ֆանտաստիկ պատկերը՝ մի ընդարձակ սրահ, որի պատերը թանկագին քարերի գույնըզգույն, շլացուցիչ ցոլանքներ էին արձակում։

Հրաշք պատկերը վայելելուց հետո, նրանք չափագրում են մեկ և կես կիլոմետր երկարություն ունեցող անձավը, որին և «Մագիլի քարանձավ» անունն են տալիս: Այնուհետև որքան ծանոթանում, այնքան համոզվում են, որ դա իսկական դասական քարայր է: Դասական այն առումով, որ և՛ անդունդներ ու նեղ անցքեր ունի, և՛ ընդարձակ դահլիճներ: Դահլիճներից մեկը կոչեցին «Արջերի», մյուսը, որի պատերի բյուրեղային գոյացումները երգեհոն էին հիշեցնում՝ «Երգեհոնային դահլիճ»... Անցքերից մեկը կոչեցին «Արտաշնչելու ճեղք», որովհետև այնքան նեղ էր, որ հարկավոր էր մինչև վերջ արտաշնչել թոքերում եղած ամբողջ օդը, լրիվ տափակել ու սլլալով սահել ցած: Ճեղք էլ կար, որ շորերով մտնել չէր լինում, համարյա մաշկահան լինելով էին թափանցում ներս: Տեղ կար, առաստաղն այնքան էր ցածր, որ սողալ էր պահանջում, անկարելի էր գլուխը բարձրացնել: Սողալով հասնում են խորքերը, տեսնում՝ առաստաղը ճեղքեր է տվել... Հանկարծ ու մի քար պոկվեր ընկներ գլխներին:

Վախի արգելքի հաղթահարումը հեշտ բան չէ: 1971 թվականին Էդվարդը ընկերոջ՝ Գառնիկի հետ մտել էր հայրենի գյուղի մոտերքի քարայրներից մեկը: Մոտ մի ժամ գնալով, հասել էին մի նեղ տեղ, ուր ոսկորներ էին թափված: Կենդանիների գերեզմանո՞ց էր: Մի քանի ժամ մնալուց հետո որոշում են գիշերը անձավում անցկացնել: Խոնավ էր, քնները չէր տանում, անընդհատ շուռումուռ էին գալիս: Էդվարդի ձեռքը սահում, հանդիպում է ինչոր կեռ բանի: Բացարձակ խավար էր: Գառնիկը գրպանի լապտերը վառում է, և տեսնում են մոտ 10 սմ երկարության ժանիք: Մի՞թե եկել մտել են հովազի բույնը: Լույսը անմիջապես անջատում են, մոտենում իրար, փշաքաղված դողում են:

— Հիմա լինեբ,— ասում է Էդվարդը,— կմտածեի՝ ոսկորներ են, ինչ է որ, բայց այն ժամանակ անփորձ էի, ու բացարձակ մթությունը, առաստաղից կաթող ջրի ձայնի հետ սահմռկեցուցիչ էին:

Խորանալով այն քարանձավի մեջ, որ հետո կոչեցին «Արջերի քարանձավ», հասան վերջին և նոր միայն նկատեցին առաստաղի քարերին կըպած մազերը. գայլի որջ չէր կարող լինել, գայլը այդքան բարձր չի, առաստաղին քսվելով բույնը չէր մտնի-ելնի: Հասկացան, որ արջի որջն են խուժել: Լավ է, որ արջը տանը չէր: Սրանց գնալուց հետո, հավանաբար, արջը եկել, մարդու հոտ է առել և դադարել այդ քարայրը մտնել: Քարայրը մնում է տղաներին: Քարայրն ուներ երկու դահլիճ: Մեկում բազմերանգ քարե ծառեր կային, մինչև հինգ մետր հաստությամբ բներով: Ասես ֆանտաստիկ անտառ էին մտել: Հաջորդ դահլիճը շեշտակի թեքությամբ իջնում էր անդունդը, նրա հատակը գունագեղ քարե կակտուսներով էր պատած: Առաստաղին կարծես փոքր ոզնիներ լինեին շարված՝ նույնպես գունագեղ... Փշերը թանկարժեք քարերի պես փայլփլում էին:

Ահա և մի ուրիշ քարայր, որի մեջ գեղեցիկ լճակներ կան՝ շրջապատված ցոլցլուն շիթաքարերով ու կաթիլաքարերով (սրանք հայկական տերմիններ են): Ներքևից բարձրացող ստալագմիտին կաթիլաքար են ասում, վերևից իջնողին՝ շիթաքար: Լճակներից մեկը այնպես է վարագուրված շիթաքարերով ու կաթիլաքարերով, որ ձեռքդ չի հասնում ջրին:

Մայիսյան տոներին տղաները երկ-

րորդ անգամ մտան «Քարայծի մեծ վիհը», որը 125 մ խորություն ունի: Այն, ինչպես և «Մագիլի քարանձավը», հայտնաբերել էր որսորդ Մագիլը: Առաջին անգամ նա տղաներին տարավ դրանց տեղը ցույց տվեց: Ապա պատմեց, որ տասը տարի առաջ, ձմռանը մի քարայծ էր խփել: Վիրավոր քարայծի արյան հետքով Մագիլը եկել տեսել էր՝ քարայծը այդ անցքի մոտ ընկած է:

Մագիլի առաջարկով այդ քարանձավը կոչեցին «Քարայծի վիհ»: «Քարայծի վիհից» 500 մետր հեռու ավելի փոքր մի ուրիշ վիհ էլ հայտնաբերեցին, դրա անունն էլ դրին «Քարայծի փոքր վիհ»: Տղաներն իրենց վրաները մեծ վիհի մոտ էին խփել: Մի օր փոքր վիհ գնալիս, ճանապարհին նեղ անցք են տեսնում: Սկսում են իջնել... Պարաններով իջնում են 90 մետր, մի ամբողջ օր չարչարվում, ընկնում են բոլորովին անհայտ մի այլ վիհ, դրա անունն էլ դնում են «Անակնկալ վիհ»: Հիշյալ երեք վիհերը մի գծի վրա են գտնվում և հավանաբար ժամանակին գետնի տակ միացած մի ընդհանուր սրահ են ներկայացրել: Ջրերը կաթիլ-կաթիլ կրաքարը ծակել, իջել են, սրահը բաժանել վիհերի: Մեծի մեջ երկու մարդ գրկված հազիվ տեղավորվեին: Բայց գնալով ընդլայնվում էր՝ 10, հետո 15 մետր, և ընդլայնվելով շարունակում էր իջնել... Առաջին անգամ մոտ վաթսուն մետր երբ իջան, ցածից, մթության միջից մեկ էլ ճերմակ թռչուններ բարձրացան: Աղավնիներ էին: Խավարի միջից ճերմակ-ճերմակ բարձրացան և նրանց բախվելով անցան գնացին վեր: Ասես պատրանք լիներ: Այս տարի մայիսին տղաները այնտեղ այլևս աղավնիներ չտեսան: Որսորդ Մագիլի ասելով աղավնիները ձմռանն են գալիս: Յուրտ օրերին իջնում են վիհի հատակը՝ տաքանալու: Անհաշիվ օձեր կան այդ անձավներում, նրանց նույնպես բերում է ցուրտը: Սաստիկ ցրտերին նրանք իջնում են, վիհերի մեջ պատսպարվում, այնտեղ ձմեռում: Իզուր չէ, որ հեքիաթներում ասում են, թե անդունդից կամ գետնի տակից վիշապ ելավ:

Տղաների հայտնաբերած մեծ վիհի շուրջ-բոլորը, փոքր, հարթ տարածություն է: Անցքից տաք գոլորշի է բարձրանում, որի շնորհիվ, այդտեղ ձմռանը կանաչ, թարմ խոտ է անում: Չորս կողմը ճերմակ-ճերմակ, ու ճերմակի մեջ կանաչ մի պատառիկ: Կաքավները, քարայծները գալիս են այդ խոտն արածելու: Մագիլի խփած քարայծը վերջին շնչում այդտեղ է ապաստանել:

Աշխարհագրական ընկերության գիտխորհրդում Էդիկը երբ պատմում է «Մագիլի քարանձավի» մասին, չեն հավատում: Նրա հաղորդածը ստուգելու համար հանձնաժողով է կազմվում, որը և գնում տեսնում և համոզվում է, որ, այո՛, ամեն ինչ Էդվարդի հաղորդածի պես է:

Այժմ Եղեգնաձորի շրջանի այն հատվածը, որտեղ «Մագիլի քարանձավն» է, վերցված է պետական հսկողության տակ: Մինչ այդ ակադեմիայում քննության է առնվել այդ հարցը: Էդվարդ Սարգսյանը մանրամասն զեկուցել է հայտնաբերված քարանձավների մասին, ցուցադրելով քարանձավներում կատարած գունավոր նկարները, հեքիաթային մի աշխարհ, ստորգետնյա ջրերից գետնի տակ գոյացած գունագեղ քարերի շողշողուն, ֆանտաստիկ սրահներ, որոնցով շլանում ես, տեսնում ու չես հավատում տեսածիդ: Վիկտոր Համբարձումյանը այն կարծիքն է հայտնել, որ գիտության առաջ մեծ

հեռանկարներ բացելուց զատ, այդ քարանձավները Հայաստանը կդարձնեն միջազգային տուրիզմի ամենահետաքրքիր երկրներից մեկը։ Զեկուցագիր է ներկայացվել կառավարությանը և մեծ ընդգրկում ունեցող գիտական աշխատանքներ են սկսվել։ Այժմ 15 կազմակերպությունն է ր՝ ինստիտուտներ, բուհեր, զբաղվում են Հայաստանի քարայրների ուսումնասիրությամբ։ Բժիշկներին բուժական առումով հետաքրքրում է քարայրների օդը։ Կենսաբաններին հետաքրքրում է քարայրների կենդանական ու բուսական աշխարհը, քիմիկոսներին ու ֆիզիկոսներին՝ քիմիական ու ֆիզիկական պրոցեսները։ Հայաստանի որ քարանձավն էլ մտնես՝ հնագիտական նյութեր կգտնես։ Նույնիսկ պաշտպանության առումով են ուշագրավ հիշյալ քարայրները։ Բնական ռմբապաստարաններ են։



Էդվարդ Սարգսյանի և իր ընկերների այս հայտնագործությունը մեր հանրապետության համար մեծ արժեք ներկայացնելով հանդերձ, խոսում է այս երիտասարդ մարդկանց անսահման հետաքրքրասիրության, այլև քաջ ու աներկյուղ, դժվարությունների առջև տեղի չտվող, անկոտրում կամքի մասին։

Ո՞վ է ասում, թե միայն պատերազմում կարելի է հերոսանալ։

Երբ էլ լինի՝ պատերազմի ժամանակ թե խաղաղ կյանքում, աշխատանքի ինչ ասպարեզում էլ որ գործելու լինես, եթե ծնվել ես քաջ ու անվեհեր, քո քաջությունն ու անվեհերությունը երևան կգան։




Ընկեր Չիբուխչյանը համեստորեն ասում է.

— Ցածր դասարանում բոլոր ուսուցիչներին սիրում են:

Բայց հավանաբար ոչ բոլոր ուսուցչուհիներին են առաջին դասարանցիները հաճախ «մայրիկ» ասում և մայրերին՝ ընկեր Չիբուխչյան: Ծնողները հետո կարմրում են, շփոթվում, իսկույն ուղղում սխալը, որը գուցե և սխալ չէ, որովհետև ո՛չ մայրերն են վիրավորվում, ո՛չ էլ ընկեր Չիբուխչյանը: Երևի բոլոր ուսուցչուհիներին չէ, որ դասերից հետո աշակերտները պատի տակ շարված սպասում են, որպեսզի տետրերով ծանրաբեռնված նրանց պայուսակները ձեռքերից առնեն, իրարից խլխլելով տանեն տուն:

— Ընկեր Չիբուխչյանի աշակերտները մյուսներից նույնիսկ արտաքինով են տարբերվում: Նրանց ճերմակ բլուզները միշտ մաքուր են, արդուկված: Բավական է մի քանի տետր նայել և ձեռագրերից իսկույն կիմացվի, որ ընկեր Չիբուխչյանի դասարանից են,— պատմում է դպրոցական տեսուչ ընկեր Ծաղարյանը: Իսկ ժողկրթբաժնի մեթոդիստ ընկեր Բաղալյանի կարծիքով, Մարո Չիբուխչյանի յուրաքանչյուր դասը ստեղծագործական աշխատանք է:

— Առաջնահերթը ինձ համար դաստիարակու-



# ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 4-Ը ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐՆ Է

թյունն է,— ասում է ընկեր Չիբուխչյանը,— երեխան եթե դաստիարակված չէ, չի էլ սովորի: Դաստիարակության հետ էլ սկսվում է կըրթությունը: Կրթությունը չի նշանակում միայն գիտելիքներ հաղորդել, այլև սեր ու հարգանք ներշնչել դեպի շրջապատի մարդիկ, շրջապատող աշխարհը՝ կենդանիները, բնությունը: Մարդու սիրտը պետք է ցավի ընկնող տերևի, ծառի քերծվածքի համար: Դա նույնքան կարևոր է, անհրաժեշտ, որքան այբբենը յուրացնելը:

Մանկավարժական ինստիտուտն ավարտելուց հետո ընկեր Մարո Չիբուխչյանը աշխատանքի է անցել Իջևանի № 2 դպրոցում, ուր և աշխատում է արդեն 17 տարի: Նրա նախկին սաներից շատերը այժմ սովորում են հանրապետության տարբեր բուհերում, ոմանք ավարտել և աշխատում են:

— Ես դեռ դպրոցական տարիներից եմ սիրել ուսուցչությունը: Դասվարությունն իմ դասղեկից եմ սովորել: Երեսուն և ավելի տարիներ են անցել, բայց հիմա էլ նրան կարոտով, սիրով, ակնածանքով եմ հիշում:

Նույնը ընկեր Չիբուխչյանի աշակերտներն են հավանաբար ասում իրենց ուսուցչուհու մասին, որին նամակներ են գրում, խորհուրդներ հարցնում, հիշում և շնորհավորում սիրելի ուսուցչուհու ծննդյան տո-

— Սեպտեմբերի 1-ն էր: Մի երեխայի բերել էին առաջին դասարան: Տղան հասել էր դպրոցի մուտքին, կպել պատից, ներս չէր մտնում:

— Ինչու՞ ներս չես մտնում,— հարցնում եմ:

— Չէ՛, չե՛մ գա,— ասում է,— ո՛չ գրել գիտեմ, ո՛չ կարդալ, ի՞նչ պիտի անեմ դպրոցում:

Ուսուցչուհին բազմաթիվ նման դեպքեր է հիշում: Ամեն աշակերտի հետ նրան ինչ-որ թանկ հիշողություն է կապում:

— Պահանջկոտություն՝ հենց առաջին օրվանից,— վերջում ասաց ուսուցչուհին,— դասի ամեն վայրկյանը իր տեղըն ու նշանակությունը, արժեքն ունի, բաց թողեցիր րոպեն, էլ ետ չես բերի: Դա պետք է միշտ աչքի առաջ ունենա և՛ աշակերտը, և՛ ուսուցիչը:

ՍՏԵՓԱՆ ՁԱՔԱՐՅԱՆ



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 42. ԱՄԵՆԻՑ ԳՐԱՎԻՉԸ ՊԱՐԶ ԽՈՍՔՆ Է, ԿԱՄ՝ ԱԾԱԿԱՆԻ ՕԳՈՒՏՆ ՈՒ ՎՆԱՍԸ

Մոլորություն է կարծել, թե խոսքը գրավիչ է, եթե հարուստ է ածականներով. «Մի տես ի՜նչ ճոխ լեզու ունի, ա՜յ քեզ հռետոր...»

Բնավ այդպես չէ:

Նախ՝ ի՞նչ բան է ածականը: Դասագրքից իսկ արդեն գիտեք, որ ածականը խոսքի մասերից մեկն է, ցույց է տալիս առարկայի կամ երևույթի հատկանիշը:

Ածականների շռայլումը հաճախ ոչ թե ուժեղացնում, այլ թուլացնում է խոսքը, զրկում նրան համոզիչ լինելուց: Տարօրինակ բան՝ ածականները շարվում են խոսքն ուժեղացնելու համար, բայց հակառակ դերն են կատարում: Ոչ միշտ, այլ այն դեպքում, երբ չեն բռնում առարկայի կամ երևույթի էությունը: Եթե մեկը դրամ է գտել ու վերադարձրել տիրոջը՝ այդ չի կարելի որակել իբրև հերոսական արարք, մարդը ընդամենը ցուցաբերել է մարդկային պարզ վերաբերմունք, բարեխղճություն: Կամ եթե սովորական ընդունակության տեր աշակերտի մասին ասվի, թե՝ չտեսնված, բացառիկ ընդունակ է, նմանը չկա: Այսպիսի դեպքերում գովասանքը դառնում է կեղծ, մարդը դրվում է ծիծաղելի վիճակում, դրական ածականը դառնում է բացասական:

Ածականն, ուրեմն, մարդու կամ երևույթի գնահատությունն է, և պետք է ներդաշնակություն լինի երևույթի ու նրա գնահատության միջև: Ածականն այդ զուգակշիռը պահող կարևորագույն միջոցներից մեկն է խոսքի մեջ: Եթե ուզում եք, որ ձեր խոսքը կշիռ ունենա, հաչի անկեղծ ու համոզիչ՝ զգույշ վարվեցեք ածականների հետ, մի շռայլեք ածականները ո՜չ գովաբանելիս, ո՜չ պատաբանելիս: Այլապես ձեր խոսքը կդառնա սնամեջ, պարապ, ինչպես դատարկ տակառը, չի համոզի, չի համակի, չի հուզի: Եվ շատ շուտով դուք կկորցնեք ձեր հեղինակությունը ունկնդրի կամ ընթերցողի աչքում:

Ավելորդ ածականները, ինչպես ավելորդ բառերն առհասարակ, խոսքի փրփուրն են, պարապ բառեր, որոնք մի դեպքում կարող են դեր չխաղալ, մի ուրիշ դեպքում հակառակ դերը կըխաղան:

Ի՞նչ եք կարծում, ո՞ր արտահայտությունն է ավելի տպավորիչ՝ «Ձեզ սիրում եմ», թե՞ «Ձեզ շատ եմ սիրում»: Առաջին հայացքից՝ երկրորդը: Մի երիտասարդ հենց այդպես էլ պատասխանել է Իլյա Էրենբուրգի այս

հարցին և արժպնացել գրողի հեգնան-քին: Հիշու՞մ եք, Նաիրի Զարյանի «Հացավան» վեպում նույն օրինակը կա. վեպի հերոսներից մեկն ուրախ կլիներ, եթե սիրած աղջիկն իրեն ա-սեր՝ «Քեզ սիրում եմ», ոչ թե՝ «Քեզ շատ եմ սիրում»:

Ածականը առարկան, երևույթը բնո-րոշելուց բացի, արտահայտում է մեր անձնական՝ սուբյեկտիվ վերաբեր-մունքը: Թե մենք ինչքան ենք սիրում կամ ատում, գնահատում կամ բացա-սում որևէ մարդու՝ երևում է մեր ընտ-րած ածականներից: Այդ ընտրության մեջ երևում է նաև գրողի կամ խոսողի շնորհքը, սեփական վերաբերմունքը ստույգ արտահայտելու կարողությունը:

Կարելի է թվել զգացում բնորոշող տասնյակ ածական՝ վսեմ, անշահա-խնդիր, մեծ, չար, նվիրական, նուրբ, կոպիտ, առողջ, հիվանդագին, բարե-հոգի, քնքուշ, կեղծ, տհաճ, մեղմ, գռե-հիկ, ջերմ, ստոր, հրճվալից, ամոթխած, տագնապալի, խռովահույզ, մաքուր, ծա-նըր, սթափ, միամիտ, մակերեսային, առնական, դուրեկան և այլն, և այլն: Սրանցից ամեն մեկն իր ոչ միայն իմաստը, այլև գույնն ու բույրն ունի, պետք է զգաս տարբերությունները, որպեսզի կարողանաս ընտրել հատկա-պես այն ածականը, որը ամենից ավե-լի է համապատասխանում բնորոշվող զգացմունքին և մեր վերաբերմունքին:

Ածականը բնորոշում է ոչ միայն այն մարդուն կամ այն երևույթը, որի մասին խոսվում է, այլև հենց իրեն՝ խոսողին կամ գրողին: Եթե մեկը չափազանց-ված՝ հույժ գերադրական ածականնե-րով խոսում է մեկ այլ մարդու մասին, իսկույն կարելի է կռահել, որ նա շահա-գրգռված կողմ է, շողոքորթ է կամ թե անհասկացող:

Դուք, երևի, նկատեցիք, որ ածակա-նը նմանության շատ եզրեր ունի մակ-դիրի՝ էպիտետի հետ: Դրա մասին խոսք եղել է մեր զրույցներում: Ընդհանուրն այն է, որ և՛ ածականը, և՛ մակդիրը բնորոշողի դեր ունեն խոսքի մեջ: Եթե ածականը տալիս է տրամաբանական բնորոշում՝ կապույտ աչքեր, խելոք միտք, ապա մակդիրը տալիս է պատ-կերավոր բնորոշում՝ ալարկոտ աչ-քեր, թևավոր միտք: Մակդիրը կարող է արտահայտվել ոչ միայն ածականով, այլև խոսքի ուրիշ մասերով. գոյակա-նով՝ հուր աչքեր, դերբայով՝ գերող սիրտ, մակբայով՝ դառնորեն մխացող կարոտ:

Նույն ածականը մի դեպքում կարող է երևան գալ իբրև ածական, այսինքն, տրամաբանական բնորոշում տվող՝ սուր դանակ, թեժ կրակ, գորշ գայլ, թունդ գինի, կարմիր մատիտ, ազնիվ մարդ, փափուկ բարձ, կարճ պարան, մյուս դեպքում՝ իբրև մակդիր, այսինքն, պատկերավոր բնորոշում տվող՝ սուր միտք, թեժ վեճ, գորշ արվեստ, թունդ վեճ, կարմիր ապագա, ազնիվ մետաղ, փափուկ ժպիտ, կարճ խելք:

Ածականի և մակդիրների ստույգ, տեղին ու չափավոր գործածությունը մեր խոսքը դարձնում են վառ, կենդա-նի, տպավորիչ, անստույգ ու անտեղի գործածությունը՝ հակառակը:




# ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԴԵՊԻ ԳՈՐԾ



Խորհրդային կարգերի հաղթանակից հետո Հայաստանի կոմերիտականներն ու երիտասարդները լծվեցին քայքայված տնտեսության վերականգնման աշխատանքներին: Նրանց ակտիվ մասնակցությամբ են կառուցվել Շիրակի, Սարդարապատի, Արտաշատի ջրանցքները, Երևանի Ձերժինսկու անվան, կարբիդի, ձեթ-օճառի, սինթետիկ կաուչուկի գործարանները, Լենինականի մանածագործական ֆաբրիկան, Կիրովականի քիմիական կոմբինատը:

•



Հայաստանի այն ժամանակվա ամենահզոր հիդրոէլեկտրակայանի՝ Ձորագէսի շինարարության ավարտումից հետո, 1932 թ. Հայաստանի կոմերիտմիությունը պարգևատրվեց հանրապետության Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

ԻՍԿ ԴՈՒ ԻՆՁ ԿԱՍԵՍ ՔՈ ԴԱՍԱՐԱՆԻ ԵՎ ՔՈ ՄԱՍԻՆ

# ԱՅՍ ՀՈՒԶՈՒՄ Է ՈՉ ՄԻԱՅՆ ԻՆՁ

Մեր դասարանում չկա «հոգեբանական համատեղություն»։ Աշակերտներն ամեն մեկը առանձին լավն են, բոլորը միասին՝ ոչ այնքան։ Տխուր է այսպես, բայց ես մենակ ոչինչ անել չեմ կարող, իսկ ես հենց մենակ եմ։ Դասարանում չունեմ ո՛չ մտերիմ ընկեր, ո՛չ ընկերուհի։ Մայրս ասում է, այդ նրանից է, որ իմ բնավորությունը վատ է։ Գուցե և նա իրավացի է։ Բայց այդ դեպքում դուրս է գալիս, որ մեր դասարանում մեծ մասը վատ բնավորություն ունի, որովհետև դասարանում իրար հետ ընկերություն են անում հազիվ տաս-տասներկուսը։ Իսկ մյուսները մխիթարություն են փնտրում այլ բաներում։ Ես, օրինակ, գրքերում և չեփական հինգերորդ դասարանում, իմ նստարանի հարևանը՝ ռադիոխմբակում։ Բայց կարող է մեզանից մեկնումեկը վատ շրջանի մեջ ընկնել։ Այդ վատ շրջանի գլխավորը բավական է հետաքրքրվի սրանով, և սա կմտածի. «Դասարանում ես կամ թե չկամ, մեկ է, իսկ այստեղ ինձ բանի տեղ են դնում»։ Մեղավոր ենք ամենից առաջ մենք, բոլորս սպասում ենք, թե երբ մեզ կասեն՝ «դու ընկերություն արա սրա հետ, դու նրա հետ...» Այսպես սպասելով հասանք ութերորդ դասարան։ Իսկ հիմա պարզվում է, որ մեր դասարանցիների կեսը չի ուզում սովորել 9-րդում։

Եվ, իրոք, եթե ութ տարի իրար հետ ձանձրալի էր, մնացած երկու տարին հազիվ թե հետաքրքիր դառնա։

Ես ուզում եմ մանկավարժական ուսումնարան գնալ։ Գուցե այնտեղ ինձ օգնեն հասկանալ, թե ինչի՞ց է, որ քառասուն հոգի կողք-կողքի են, բայց միասին չեն։ Ինչի՞ց է դասարանում ստեղծվում այսպիսի «բարեկեցիկ» վիճակ, երբ համադասարանցիները իրարով չեն հետաքրքրվում, և ի՞նչ անել, որ այդպիսի դասարաններ չլինեն։

ԳԱԼՅԱ ԼԵՎԻՆԱ
Ք. Տամբով
«Пионер»-ից

ՄՈՒՇԵՂ ՀԱԿՈԲՅԱՆ



# ՉԱԼՓԵՏՈՒՐԻԿ ԹՌՉՈՒՆԸ

(Հայ. ժող. հեքիաթ)

Մի որսկան է լինում, անունը Վարոս: Նրա գնդակը երբեք չի վրիպում, անգամ յոթերորդ երկնքում թռչող արծիվը չի ազատվում նրա արձակած գնդակից:

Մի օր, սովորականի պես, Վարոսը գնում է որսի: Ամբողջ օրը պըտըտվում է լեռներում, ձորերում, անտառներում, բայց մի ճնճղուկն ինչ է, չի պատահում. դա չեղած բան էր նրա կյանքում: Ոչ մի անգամ նա առանց որսի տուն չէր վերադարձել:

Մութն ընկնելու վրա էր: Վարոսը գլխիկոր բռնեց վերադարձի ճամփան: Լեռնային ծաղիկներից մի գեղեցիկ փունջ կապեց, սառնորակ աղբյուրից կուշտ ջուր խմեց և շարունակեց ճանապարհը: «Էս լավ էր,— մտածեց,— վաղուց է, որ իմ սիրունիկ աղջկա՝ Հասմիկի համար ծաղիկ չեմ տարել. էսօր էլ ծաղիկով կուրախացնեմ»: Ճանապարհը գնում էր խիտ անտառի միջով: Հանկարծ մոտիկ մի ծառի ճյուղերը շարժվեցին: Տեսավ չալփետուրիկ մի թռչուն, որ էդ կողմերում հաճախ էր պատահում, բայց Վարոսը ոչ մի անգամ չէր կրակում նրա վրա, նայում, հիանում էր նրա գեղեցկությամբ և անցնում: Այս անգամ ձեռնունայն էր և հրացանն իջեցրեց ուսից ու նշան բռնեց:

— Ինչու՞ ես ինձ սպանում, ո՛վ որսորդ Վարոս, ուր որ է երկինքը փլվելու է, դու ի՞նչ օգուտ ունես ինձ՝ սպանելուց:

Վարոսը լսեց մարդկային լեզվով խոսող թռչունին և ձեռքերը թուլացան, հրացանն իջեցրեց.

— Ո՛վ չալփետուրիկ թռչուն, դու ճի՞շտ ես ասում, որ երկինքը փըլվելու է:

— Իհարկե, ճիշտ եմ ասում,— պատասխանեց չալփետուրիկ թռչունը,— ուր որ է երկինքը փլվելու է, որսկա՛ն Վարոս:

Ահը խոր նստեց Վարոսի սրտում: Հրացանն ուսը գցեց, մոռացավ վերցնել Հասմիկի համար բա-

ղած ծաղկեփունջը, որ ցած էր գցել անից և դողդողացող քայլերն ուղղեց դեպի տուն: «Գոնե շուտ տուն հասնեմ,— մտածում էր,— երկինքը երբ փլվի, ընտանիքիս հետ լինեմ»:

Կինը ճաշ էր եփել և սպասում էր Վարոսի վերադարձին: Համիկը թռչունի պես ծլվլալով դիմավորեց հորը և փարվեց նրա ծնկներին, բայց հայրը ամեն օրվա պես չգրկեց, չհամբուրեց, չըփաղաքշեց:

— Ի՞նչ է պատահել, Վարոս,— հարցրեց կինը,— հիվանդ հո չե՞ս:



— Չէ, հիվանդ չեմ,— պատասխանեց Վարոսը:

— Բա ինչո՞ւ ես գունատված,— պոկ չեկավ կինը:

— Ձեռք քաշիր, ա՛յ կընիկ, կասեմ, հետո կասեմ:

Կինը լռեց: Վարոսը երկյուղած սպասում էր, որ ուր որ է, երկինքը կըփլվի: Պառկեցին քնելու, բայց Վարոսը՝ չքընեց. սարսափած սպասում էր աղետին: Միայն լուսաբացին հասկացավ, որ չալփետուրիկ թռչունը խաբել է, որ իր կյանքն ազատի, հագնվեց և դուրս եկավ տնից: Հասավ են տեղը, ուր տեսել էր խոսող թռչունին, հրացանն իջեցրեց ուսից, սպասեց:

— Հը՞, որսկա՛ն Վարոս, նորի՞ց ես եկել որսի,— լսվեց ճյուղերի արանքից:

Վարոսը բարձրացրեց հրացանի փողը, նշան բռնեց:

— Չալփետուրի՛կ թռչուն,— ասաց,— իմ արձակած գնդակը չի վրիպի, իմ ձեռքից չես պրծնի: Ինչո՞ւ ինձ խաբեցիր: Հիմա փետուրներդ քամուն կտամ:

— Ես քեզ չեմ խաբել, որսկա՛ն Վարոս,— ասաց չալփետուրիկ թռչունը,— ես ճշմարիտ բան եմ ասել, բայց դու չես հասկացել:

— Ինչպե՞ս չեմ հասկացել,— բարկացավ Վարոսը:— Դու չասացի՞ր, ուր որ է երկինքը փլվելու է: Բա ինչո՞ւ չփլվեց, խաբեբա՛:

— Ա՛յ որսկան Վարոս,— ասաց թռչունը,— դե հիմա լսիր՝ ես քեզ բացատրեմ. մենք բոլորս ապրում ենք էս գեղեցիկ երկնքի տակ, էս գեղեցիկ անտառներում ու սարերում: Կյանքը թանկ է ամենքիս համար, բոլորս էլ ապրել ենք ուզում. մարդ թե գազան, թռչուն թե սողուն: Մեզնից որին էլ զրկեն կյանքից՝ երկինքը չի՞ փլվի նրա գըլխին: Երեկ հրացանդ ուղղել էիր ինձ և եթե ըսպանեիր, երկինքն իմ գլխին փլվելու էր: Մի՞թե խաբել եմ քեզ:

Որսկան Վարոսը լսեց, երկար միտք արավ, և այդ էր ու այդ. հրաժարվեց որսորդությունից և ուրիշներին էլ խորհուրդ է տալիս որս չանել:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



## ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

# Չի՞ կարելի...

1.
Թռչնիկը գիտի քայլել,
Գիտի երգել,
Գիտի թռչել.
Թե այդպես է,
Նա կիմանա ամեն ինչ էլ։
Թե այդպես է,
Ինչու՞ նրան չնետենք ծով,
Թող որ լողա
Ալիքներում ալեկոծվող,
Ընկերանա ձկնիկներին,
Չի՞ կարելի...

2.

Կամ ձկնիկը,
Թող որ ազատ թռչի օդում,
Ինչու՞ լողա ու չարչարվի,
Թևե՞ր չունի, մի բան կանենք,
Կնստեցնենք օդանավին,
Թող որպես հողմ,
Սուրա այս կողմ,
Սուրա այն կողմ,
Ի՞նչ է, շնչել չի՞ կարենում,
Մեզնից լա՞վ է, նա՞զ է անում,—
Օրը օրին
Կսովորի։
Չի՞ կարելի...

3.
Կամ ձիուկը...
Եկեք զուգենք պոչ ու գավակ,
Հովիտներից բերենք քաղաք։
Մեղք չէ՞, ինչու՞ այդքան վազի,
Թող որ նստի ավտոբուսին,
Իսկ տուն գալիս
Տեղավորվի վերելակում,
Գնա իջնի վերին հարկում...
Եվ գիշերը
Ոչ թե կանգնած խեղճը քնի,
Այլ անկողնում հանգիստ առնի...
Չի՞ կարելի...



4\.

Գազանիկին
Պարսավելու, պատժելու տեղ,
Եկեք փորձենք,
Հանձնարարենք նրան գործեր...
Թող հագնվի, կապի փողկապ,
Դահլիճի կարգ...

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

Կտանք սրտանց
Աշխատավարձ,
Համով ճաշեր, բնակարան,
Էլ չի ուտի սրան-նրան,
Պարապ-սարապ չի թրևի...
Չի՞ կարելի...

5\.

Բայց ձուկն էլի
Երջանիկ է միայն ջրում,
Թռչունն օդում,
Ձին ինքնակամ սլացքի մեջ,
Գազանը, երբ
Հալածում է ու հոշոտում...

Երջանիկ ենք լինում և մենք,
Երբ փորձում ենք մենք մեզ զգալ
Թռչուն կամ ձուկ,
Սլացքի մեջ եղող ձիուկ,
Բույս զանազան,
Բայց ոչ գազան...
Հակառակը հակառակ է
Ինձ, քեզ, նրան ու բոլորին:
Չի՛ կարելի...

# «ԻՄ

Երևանի № 46 դպրոցի դիրեկտոր ընկեր Աբելյանը մի խումբ աշակերտների հանձնարարեց շարադրություն գրել «Իմ հայրիկը» թեմայով և ասաց, որ շարադրությունների տակ իրենց անունազգանունները չգրեն: Այնուհետև ընկեր Աբելյանը հրավիրեց հիշյալ աշակերտների հայրերին ու գրված շարադրությունները ընթերցեց նրանց:

## ՀԱՅՐՍ ԻՆՁ ՀԱՎԱՏՈՒՄ Է

Ինձ համար իմ հայրիկը շատ է թանկ: Ասում են, որ աղջիկը հիմնականում մոտ է լինում մորը, իսկ ես ավելի մտերիմ եմ հորս հետ: Որովհետև հայրս ինձ անչափահասի տեղ չի դնում: Նա չի հսկում, թե ես ինչպես եմ պատրաստում դասերս: Հայրս ինձ հավատում է, և ես աշխատում եմ նրա վստահությունը չկորցնել:

Մեր հարևանը լքել է կնոջը: Նրա տղան բռնել է սխալ ճանապարհ: Հայրս ամեն կերպ աշխատեց ուղղել այդ տղային: Նա իմ հորը հարգում է, լսում նրան: Հորս հարգում են նաև իր աշխատանքային ընկերները:

## ԵՍ ՆՐԱՆՑԻՑ ԳԱՂՏՆԻՔ ՉՈՒՆԵՄ

Իմ կարծիքով բոլոր հայրերը իմ հայրիկի նըման են: Նրա պես պարզասիրտ են, հոգատար, բայց պահանջկոտ ու զայրացկոտ:

Մի ժամանակ հայրս ինձ չէր վստահում: Ինձ համար դա մեծ վիրավորանք էր: Թաքցնում էի նրանից բոլոր լավ կամ վատ զգացմունքներս, թաքցնում էի ստացածս ցածր գնահատականները: Հայրս զգաց, որ մեր իրար չհասկանալը առաջ է գալիս այդ անվստահությունից: Ես դեռ չափահաս չեմ, բայց խորապես գիտակցում եմ հորս հոգատարությունը մորս և մեր նկատմամբ:

Իմ և եղբայրներիս ծընողական ժողովներին մայրս չի մասնակցում: Առանց այդ էլ նա շատ է ծանրաբեռնված ընտանեկան հոգսերով: Մեր դըպրոցական գործերով ըզբաղվում է հայրս:

Ես ոչ մի գաղտնիք չունեմ իմ ծնողներից: Երբ կա փոխադարձ վստահություն, կան նաև շիտակ ու ջերմ փոխհարաբերություններ:



# ՀԱՅՐԻԿԸ»

Հայրերի համար շատ անսպասելի բան կար այդ շարադրություններ մեջ, որոնք նրանց, ընկեր Աբելյանի վկայությամբ, խորապես հուզեցին:

Այդ շարադրություններից մի ամբողջ շարք կտպագրվեն մեր ամսագրում, այս համարից սկսած:

«ՊԻՈՆԵՐԻ»
ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ



## ՄԵՂԱՎՈՐԸ ՀՈՐՍ ԸՆԿԵՐՆԵՐՆ ԵՆ

Ի՞նչ կարող եմ ասել իմ հայրիկի մասին: Նա լինում է և՛ բարի, և՛ չար: Պատահում է, որ տուն է գալիս հարբած: Հարբած վիճակում նա դառնում է դաժան և բոլորին կոպտում է ամեն չնչին շարժումի համար: Սկսում է կոպտել մայրիկին, ասելով, որ նա մեզ երես է տվել: Պատահում է, որ նա մեզ համարում է իր դժբախտությունը, կարծես մենք կտրել ենք նրա թևերը և թույլ չենք տալիս իրեն ազատ ապրել: Մենք ամեն կերպ ցանկանում ենք նրան ուրախացնել, բայց հաճախ ապարդյուն են լինում մեր չարչարանքները: Հարբած ժամանակ նա շատ անգամ գերադասում է միայնակ լինել, և երբ նա հարբած տուն է գալիս, մայրիկի հետ միասին քաշվում ենք մյուս սենյակը: Շատ անգամ մենք խոսել ենք հայրիկի հետ և ցանկացել ենք իմանալ, թե ինչու՞ է խմում: Նա դարձյալ սկսում է մեղադրել մայրիկին, որ մենք համարձակություն ենք ունենում իր հետ այդ մասին խոսել: Բայց իմ հայրիկը շատ անգամ էլ տուն է գալիս ուրախ, և մենք մեզ համարում ենք աշխարհի երջանիկները: Նրան հարբած վիճակում տեսնելիս ես մեղադրում եմ նրա աշխատանքային որոշ ընկերների, որոնք ընդմիջման ժամանակ նրան իրենց հետ խմեցնում են:



ՀԼԿԵՄ 60



# ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԴԵՊԻ ԳՈՐԾ



Հայրենական մեծ պատերազմի տարիներին Հայաստանի կոմերիտմիության շարքերից սովետական բանակ մեկնեց ավելի քան 70 հազար կոմերիտական, որից 20 հազարը՝ կամավոր, պատերազմի հենց առաջին տարիներին:

Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ հերոսական էջեր գրելով լենինյան կոմերիտմիության անունը փառքով պսակեցին կոմերիտականներ, Սովետական Միության կրկնակի հերոս Նելսոն Ստեփանյանը, Ջահան Կարախանյանը, Սովետական Միության հերոսներ Հունան Ավետիսյանը, Սուրեն Առաքելյանը, Լիպարիտ Իսրայելյանը, Սուրեն Սարգսյանը, Հարություն Մկրտչյանը, Սիմոն Բաղդասարյանը և ուրիշներ:







# Ե՞ՐԲ ԹԵՎԵ՛Ր ԱՌԱՆ

*ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ*

Ծիածաններից զամբյուղներ հյուսել,
Բույն էին շինել հավքերն հանճարեղ,
Աղեղնակում էլ թուխս էին նստել,
Իմ երազների արտույտներն անմեղ:

Բայց ես չիմացա արդյոք ե՞րբ նրանք,
Ո՞ր լուսաբացին դուրս եկան ձվից,
Ու չհասկացա, ե՞րբ թևեր առան
Եվ ո՞ր օրվանից դուրս թռան բնից:

Այդպես էլ երբեք, ես ոչ մի անգամ
Եվ ոչ մի ձևով չտեսա նրանց,
Բայց ծիածանի վրա հավիտյան
Նրանց գունագեղ փետուրը մնաց:



# ԵԼՆԵՄ ԳՆԱՄ

ԳՈՒՐԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ

Ելնեմ գնամ ու թափառեմ
Հարդագողի ճամփի վրա,
Եվիս հանեմ ու նվագեմ՝
Նստած բարձր ամպի վրա։

Թաց ամպերի շաղոտ կրծքից
Սառն ու զուլալ ջրեր բխեն,
Իմ գառներին ջրի կանչեմ,
Ջինջ, սառնորակ ջրից խմեն։

Շուրջս փռվի անուշ բուրմունք,
Բույրով հարբած ես նվագեմ,
Գառներն ուրախ ինձ նայելով
Մայուններով արձագանքեն...




# ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԴԵՊԻ ԳՈՐԾ

●

1949 թ. հանրապետության տասնմեկ հազար կոմերիտականներ ու երիտասարդներ ժամկետից մեկ տարի շուտ կատարեցին վերականգնման և զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանը, 2 444 կոմերիտականներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Գյուղատնտեսության մեջ աշխատող 41 կոմերիտականներ արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման։



●

Հիսունական թվականներին հանրապետության կոմերիտականները ակտիվորեն մասնակցեցին այնպիսի խոշոր կառույցների շինարարությանը, ինչպիսիք են՝ Աթարբեկյանի և Արզնու հիդրոէլեկտրակայանները, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի երկրորդ հերթը, Սևանի ապակեթելի, Կիրովականի արհեստական մետաքսի, Լուսավանի (Չարենցավան) գործիքաշինական գործարանները և այլն։






Ակվարիումներում պահվող փոքրիկ ձկներ առաջին անգամ տեսա հորս ընկերոջ տանը: Խնդրեցի, նա ուզեց բանկայի մեջ լցնել տալ, հայրս չթողեց:

— Դասերը բոլորովին աչքաթող կանի,— ասաց:

Հորս ընկերը ինձ թաքուն աչքով արեց: Ես հասկացա, որ նա ձկները հետո կտա: Այդպես էլ արավ: Մի քանի օր անց ցելոֆանե տոպրակի մեջ լցրած բերեց: Հայրս ոչինչ չասաց: Նա նույնպես սիրում էր կենդանիներ, իմ հասակում ինքն էլ է պահել ձկներ, շուն, կատու, մինչև անգամ մկներ: Իսկ ինձ արգելում էր:

— Դասերդ բոլորովին աչքաթող կանես,— ասում էր:

Բայց այս անգամ ձայն չհանեց. չէր կարող ձկները ընկերոջ ձեռքը տալ՝ ետ ուղարկել: Նայեց ընկերոջը, նայեց ինձ, գլուխը տարուբերեց.

— Երեք լիտրանոց բանկա՛ բեր,— ասաց ինձ:

— Ակվարիումի մեջ լցնենք,— ասացի:

— Չէ՛,— ասաց,— բանկա՛ բեր:

Դեռ անցած տարի, ամառային արձակուրդներին հայրս ակվարիում պատրաստեց, մե՜ծ, շա՜տ մեծ, մոտ տասնըհինգ դույլ ջուր էր վերցնում:

— Եթե դասերդ կանոնավոր սովորես, ձուկ կպահենք,— ասաց դեռ անցած տարի:

Ես խոստացա: Մինչև անգամ երբ դասերը սկսվեցին, առաջին ամիսը նա գոհ էր իմ գնահատականներից: Բայց հետո սկսեցի կամաց-կամաց ծուլանալ, և ակվարիումը մնաց դատարկ ու

չոր: Այդպես նա պատրաստել էր նաև թռչունների համար մի շատ գեղեցիկ վանդակ: Դա էլ ակվարիումի նման մըտնացել էր դատարկ:

Տատս պատմում էր, որ կենդանիներ պահելը հորս չի խանգարել, դասարանում գրաված բարձրությունից չեն գլորել ցած: Այդ էին հաստատում հորս դիպլոմի գնահատականները, որ մայրս հաճախ աչքս էր խոթում: Ես ուզում էի նմանվել հորս, բայց ուրիշ բան է ուզենալ, ուրիշ բան է կարողանալ:

Մի օր, մի շաբաթ, մի ամիս կարծես լավ էին գնում դպրոցի գործերս, բայց շաբաթներ ու ամիսներ չշարունակվեցին:

Այդպես հորս պատրաստած ակվարիումն ու վանդակը մնացին պատըշգամբում չոր ու ցամաք, անգործության մատնված:

Այժմ հորս պահանջած բանկան մայրըս լավ լվաց, տաք ջրով հականեխեց, նոր միայն տվեց հորս: Նա ձկները գըցեց բանկայի մեջ, դրեց խոհանոցում՝ սեղանի վրա:

— Թող առայժմ այստեղ մնա,— ասաց:

Ես արդեն ձուկ ունեի, իմ ձկները լողում էին բանկայի մեջ: Գեղեցիկ էին: Գունավոր: Փոքրիկ: Լողում էին աշխույժ, ընկնում իրար ետևից, կարծես բռնոցի էին խաղում: Իջնում էին հատակը: Մանր քարեր գցեցի, լիզում էին քարերը: Հետաքրքիր էր: Ես նայում էի կլանված: Մայրս զգուշացրեց, որ անցնեմ դասերիս:

— Հիմա՛,— ասացի:

Չէի պոկվում ձկներից: Կեր տվեցի: Հորս ընկերը ինձ տվել էր դեռ անցած շաբաթ: Կտկտացրեցի բանկան, ձկները թողնելով իրենց խաղը բարձրացան վերև: Հորս ընկերը ինձ արդեն բացատրել էր: Ձկները սկսեցին կերը ուտել: Մայրս նորից հիշեցրեց դասերս:

— Հիմա՛,— ասացի ես քթի՛ տակ:

Հայրս աշխատանքից տուն եկավ, ես դեռ կպած էի ձկներին:

— Հայրի՛կ, տես ի՛նչ գեղեցիկ են խաղում:

—Գիտեմ, գիտեմ,— ասաց նա,— հաց կերե՞լ է,— դիմեց մորս:

— Որտեղի՞ց:

— Դասերն էլ չի պատրաստե՞լ:

— Որտեղի՞ց,— ասաց մայրս:

— Պարզ է,— ասաց հայրս,— հաց դիր թող ուտի ու գնա քնելու:

Դասամիջոցներին ես տղաներին ոգևորված պատմում էի իմ ձկների մասին, իսկ նրանք հետաքրքրությամբ լըսում էին: Խոստացա դասերից հետո տանել նրանց մեր տուն, ցույց տալ:

Գնացինք: Մայրս ընդունեց սիրալիր և սեղանի վրա քաղցրավենիք դըրեց, բայց մենք խռնվեցինք բանկայի շուրջը:

— Ի՛նչ գեղեցիկ են:

— Ինչքա՛ն գույներ կան ձկների վըրա:

— Ի՛նչ լավ են լողում:

Երեկ այդ փոքրիկները չկային:

— Ձա՛գ են հանել, ձագ են հանե՛լ, մա՛մ, մա՛մ, ձա՛գ են հանել:

— Տեսել եմ,— ժպտաց մայրս:

— Մա՛, փոքրիկներին առանձնացնել է պետք,— հորս ընկերը զգուշացրել էր, որ եթե փոքրիկներին չառանձնացնենք, մեծերը կարող են նրանց ուտել:

— Դու չես կարող, սպասիր հայրդ գա,— ասաց մայրս:

Ընկերներս գնացին, իսկ ես պահակ նստեցի: Բանկան դրսից անընդմեջ կտկտացնում էի, որ մեծերը չմոտենան



փոքրերին: Այդպես մինչև հայրս տուն եկավ: Իմացավ: Իմացավ նաև, որ դասերից հետո ո՛չ հաց եմ կերել, ո՛չ էլ տեղից շարժվել: Ինչպե՞ս կարելի էր տեղից շարժվել, երբ բանկայի մեջ կարող էր գիշատիչների խնջույք տեղի ունենալ: Նա գլուխը տարուբերեց, բայց առանձնացրեց ձագերին: Իմ ձկների գլխաքանակը ավելացավ վեցով: Նրանք փոքրիկ էին՝ ասեղի գլխիկի չափ, բայց լողում էին, աշխույժ էին, կեր էին ուտում, ինչպես մեծերը: Քարերն էին լիզում, ինչպես մեծերը: Հետաքրքիր էր հետևել նրանց ամեն շարժումին, արարքին:

Անցավ ևս մեկ ամիս: Փոքրերը մի քիչ մեծացան, այնքան, որ հայրս նրանց լցրեց մեծերի բանկան: Բանկայի մեջ հիմա տասնչորս ձուկ էր լողում: Տեղը արդեն փոքր էր, շատ էր փոքր: Խնդրեցի հորս, որ ակվարիումի մեջ լցնի, հայրս հրաժարվեց: Օրագրիս մեջ արդեն չորս «երկուս» էր ժպտում: Հայրս զգուշացրեց, որ ձկները կվերացնի, եթե ինձ չհավաքեմ: Խոստացա, բայց դարձյալ չկարողացա խոստումս պահել: Չէի կարողանում ձկներից պոկվել, պոկվելիս էլ՝ գիրքը երբ ձեռքս էի առնում, աչքիս առջև, տողերի արանքներում դարձյալ ձկներն էին լողում:

Հորս ընկերը եկավ, հայրս օրագիրս ցույց տվեց նրան, նա գլուխը տարուբերեց:

— Այսպես չի լինի,— ասաց:

— Ես այդպես էլ գիտեի,— ասաց հայրս:

— Ձկները նորից ետ եմ տանելու,— լուրջ ասաց հորս ընկերը:

Ես խեղճացած նայեցի նրան:

— Հիմա կտանեմ, երբ դպրոցի գործերդ լավանան, նորից կբերեմ,— ասաց:

— Տա՛ր,— ասաց հայրս:

Ես լաց եղա:

— Խոսք եմ տալիս,— անգիր արածի նման ասացի ես:

— Տղան խոսք է տալիս,— հորս դիմեց ընկերն ու շոյեց գլուխս:

Հայրս ձայն չհանեց: Ընկերը չտարավ ձկները: Իմ ձկները մնացին ինձ:

Մենակ մնալով ես իմ ձկների առաջ երդվեցի խոստումս պահել, հավաքել ինձ, դպրոցի գործերս լավացնել, որ իմ ծուլության մեղքը իմ անմեղ, անլեզու ձկների վրա չբարդվի:

*Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ*







ՀԼԿԵՄ 60

Այսօր գիտությունը և արվեստը մեր հայրենիքում զարգանում են այնքան բուռն, որ բոլորից պահանջվում է տաղանդ, գյուտարարություն, ստեղծագործություն: «Երիտասարդության անօգուտ վատնած ժամանակը այլևս չի վերականգնվում, —ասում է ակադեմիկոս Գ. Ի. Մարչուկը:— Որքան մարդը շուտ կողմնորոշվի իր նպատակների մեջ, այնքան նրա կյանքը կլինի օգտակար, ուրեմն և երջանիկ»:

Ստորև ներկայացնում ենք երիտասարդության գիտատեխնիկական ստեղծագործության 1981 թվականի ցուցահանդեսի նյութերից մի քանիսը:

# ՍՏԵՂԾԵԼ ԵՆ ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆՆԵՐԸ

## ԴՈՒՔ ԿԱՐՈՂԱՆՈ՞ՒՄ ԵՔ ՔԱՅԼԵԼ

Այս հարցին կպատասխանի լատվիացի գիտնականների պատրաստած սարքը: Շատ ու շատ մարդիկ քայլում են ոտքերի չափազանց լայն կամ չափազանց մոտ դրվածքով, խիստ թեքում են ներբանները դեպի ներս կամ դեպի դուրս: Այդպիսի քայլվածքը առօրյայում կարող է աչքի չզարնվել, մինչդեռ սպորտում, արվեստում, հատկապես պարարվեստում մարմնի գեղեցիկ պահվածքը և քայլվածքի ճկունությունը հաջողության գրավականներից է: Լատվիական հանրապետությունում ստեղծված այդ սարքը օգտակար է նաև այն մարդկանց համար, ովքեր ծանր հիվանդությունից կամ վնասվածքներից հետո նորից քայլել են սովորում:

Սարքի հիմնական մասը ոչ սովորական գորգուղի է, որի հիմքում մետաղալարերի հյուսվածք կա: Փորձարկվողը հատուկ ներբանով կոշիկ է հագնում, քայլում գորգուղով, և ներբանը մետաղալարերի ցանցի հետ շփվելով՝ փոխում է որոշակի էլեկտրական շղթաների դիմադրությունը: Արդյունքում հեռուստաէկրանի վրա գծագրվում է քայլվածքի հետագիծը: Կողքին, նույն էկրանի վրա լուսավորվում է օրինակելի՝ էտալոնային քայլվածքի պատկերը, որն ունի քայլի հանձնարարվող լայնություն, ներբանների թեքման անկյուն, ոտնատեղերի միջև եղած տարածք... Քայլվածքի ռիթմը ձայնային ազդանշաններով տրվում է բարձրախոսից:

## ՇԱՐԺԻՉԱՎՈՐ ԱՄՊ

Արդյոք պե՞տք է, որ դաշտով սողա ոռոգման ջրանցքների ջրով բեռնված ոչ ճկուն ու մեծ մեքենան: Ավելի լավ է այդ նպատակով օգտագործել թռչող սարք: Ինքնաթիռը և ուղղաթիռը այստեղ քիչ օգտակար են: Նրանց բեռնատարողությունը փոքր է, իսկ թռիչքի արժողությունը մեծ: Մինչդեռ ղեկավարվող օդապարիկը կարող է օդ բարձրացնել հազարավոր տոննա ջուր, դանդաղ լողալ դաշտի վրայով առանց վառելիքի մեծ ծախսի: Կարող է նույնիսկ տեղում կախված մնալ:

Պերմցի մի խումբ պատանի տեխնիկներ այդպիսի օդապարիկի գործող մոդել են պատրաստել:

# ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ

## Ես ձեր ծանոթն եմ և բարեկամը

Ի տարբերություն իմ կոլեգաների՝ ես հյուր չեմ կարող համարվել «Պիոների» էջերում և ոչ էլ յուրաքանչյուր տանը «Պիոներ» ամսագրի միջոցով: Ո՞րն է պատճառը կամ ինչո՞ւ. շատ պարզ:

Ահա շուրջ 30 տարի է, ես կապված եմ ամսագրի հետ, սկզբում երիտասարդ նկարիչ, հետո հարուստ փորձով նկարազարդող, ապա և՝ տարիներ ի վեր խմբագրական կոլեգիայի անդամ:

Բայց պատանի բարեկամներիցս շատերը կարող են ասել, թե մենք հանդիպում ենք առաջին անգամ, հնարավոր է, այդ դեպքում ես ծանոթ եմ ձեր ծնողների հետ կամ գիտեն ինձ ձեր ավագ քույրերն ու եղբայրները: Այո, լինում են ծանոթներ, բարեկամներ, որոնց դուք շատ լավ գիտեք, բայց երբեք չեք հանդիպել և սեղմել միմյանց ձեռք կամ փոխանակել կենդանի խոսք, մինչդեռ մտովի շատ եք խոսել, խորհրդակցել, զարմացել, հիացել, ծիծաղել և չարաճճիներդ նույնիսկ ծաղրել եք ինձ՝ շատ բեղիկներ, կոտոշներ ավելացրել նկարազարդումներիս վրա և երկարացրել հերոսներիս քիթը...

Մեզ դուք անվանում եք նկարիչ, գրող, կոմպոզիտոր և այլն, ու այս հըրաշագործ մասնագիտության տեր մարդիկ առանց «իրավունքի» միջամտում են ձեր գործերին, խառնըվում ձեր կյանքի զանազան պահերին, օգնում տեսնելու գեղեցիկը, ապրելու գեղեցիկով և օգնում կանգնելու ճշմարիտ ճանապարհի վրա:

Այո՛, մեր նպատակն է գեղեցիկ դարձնել ձեր կյանքի ուղին: Ինչպես տեսնում եք՝ ես և իմ ընկերները իսկապես ձեր բարեկամներն ենք և ոչ միայն այսօր, իսկ երբ գա ժամանակը և դադարեք «Պիոներ» ամսագիրը կարդալ, արդյոք մենք կբաժանվե՞նք: Ոչ: Մենք նորից ձեր հարկի տակ կհանդիպենք այս անգամ մեր ստեղծած գրքերով, նկարներով, երգերով, նոր խորհուրդներով, նոր խնդիրներով:

Եվ եթե մենք հասկացել ենք միմյանց և հավանել, արդեն հետագայում դուք կփնտրեք ինձ և իմ ստեղծագործությունները՝ գըրքերում, թանգարանային սրահի պատերի վրա կամ ցուցահանդեսներում: Եվ երբ գտնեք, կժպատ ու լռելյայն կբարևեք: Ահա դա կլինի այն մեծ գնահատականը, որին աշխատում ենք արժանի լինել յուրաքանչյուրս մեր ողջ կյանքում: Որովհետև սա իր հերթին նշանակում է, որ մեր մտքի, հոգու և սրտի բաբախումները հասել են ու դարձել մեր կյանքի կենսական պահանջը, որը և նշանակում է՝ դուք դարձել եք կիրթ և հետաքրքրասեր, առանց որի լինել իսկական մարդ, քաղաքացի, հայրենասեր անհնար է: Ահա թե ինչու ես ձեր հյուրը չեմ, այլ ձեր հին ծանոթը և բարեկամը:

ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ
Հայկական ՍՍՀ ժողովըրդական նկարիչ, ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ

# ԲՆՈՒԹՅԱՆ ՁԵՌԱԳԻՐ

Երկրաբանական ապարների մի ամբողջ շերտախումբ հսկայական պաբլսպի նման ձգվել էր ճանապարհի ամբողջ լայնությամբ:

Ամենականտարելագործված որմնադիրի փորձված ձեռքն էր ասես ստեղծել այդ պատկերը: Միմյանց վրա շարված հսկայական սալիկների շարք էր: Մոտիկից դիտողին անպայման կթվար, թե գծագրողը և նկարիչը անմասն չեն մնացել այդ պարիսպ կոչեցյալի ձևավորման գործում: Զուգահեռ, բարակ և մաքուր գծերը խոսում էին հմուտ և շնորհալի գծագրողի մասին, իսկ նկարիչը չէր զլացել գույների ամենանուրբ երանգներով նախշազարդել սալիկների լայնական կտրվածքը:

Կրկնվող գույները և նախշերը պարբերաբար հաջորդում են միմյանց, իսկ երկրաբանի հմուտ ձեռքը ագահորեն՝ շտապ-շտապ արտանկարում է հիասքանչ պատկերը:

Ահա ինչ-որ տեղում երկու գծեր հատվել են և կազմել ոչ մեծ սուր անկյուն, դեպի երկրի խորքը գնացող գույների ու երանգների մի ամբողջ շարք: Ավելի հեռվում գծերը անհետանում են, իսկ պարբերաբար կրկնվող գույները և նախշերը աստիճանաբար անցնում են մի համասեռ գույնի: Այժմ էլ ասես փորագրիչի ձեռքն է պատի վրա ճեղքերի մի ամբողջ շարք ստեղծել:

Այդ բոլորը ուշադրությամբ դիտող երկրաբանը առանց հապաղելու կասի, որ այդ շրջանը ինչ-որ ժամանակ եղել է ծովի հատակ, իսկ որմնադիրի, նկարչի, գծագրողի և փորագրիչի դերում հանդես է եկել ամենազոր բնությունը: Ջուրը ծովի խորքն է քաշել մեկ ավազաքարեր, մեկ կրաքարեր, մեկ օրգանական ծագման այլ նյութեր, չմոռանալով յուրաքանչյուր հատվածում թողնել օրգանական աշխարհի ներկայացուցիչների կմախքներ, ոսկորների մնացորդներ:

Ոչ շատ հեռվում կտրուկ կերպով փոխվում է մեր ուսումնասիրության առարկան: Փոխվում է լեռնային ապարի ոչ միայն գույնը, այլև նրա կառուցվածքը:

Մուգ մոխրավուն հոծ կառուցվածքով նոր հատվածքը ձգվում է հսկա տարածության վրա: Երկրաբանական մուրճը հազիվ է պոկում նրանից անհրաժեշտ չափերի նմուշներ: Մասնագետ-երկրաբանը առաջին իսկ հայացքից չի կարող չհամոզվել, որ դա լեռնային ապարի մի ուրիշ տեսակ է, որը ոչ թե ծովում է առաջացել, այլ դուրս է ժայթքել երկրի ընդերքից:

Ուսապարկը ծանրանում է: Սակայն երկրաբանը չի զգում ծանրությունը: Չի զգում անգամ, թե որքան արագ է սահում ժամանակը: Նա կլանված է հետաքրքիր աշխատանքով: Դա նաև արվեստ է: Դա բնության գործունեության, նրա ստեղծած հրաշքների, մի խոսքով՝ գեղեցիկի գեղարվեստական վերարտադրությունն է իր օրագրում, իսկ ուսապարկում փաստացի նյութերն



# ՄԱՏՅԱՆԸ

են, սովորական, առայժմ համր, անլեզու քարեր, որոնք վաղը քիմիական և երկրաբանական լաբորատորիաներում լեզու կառնեն և մեկ առ մեկ կպատմեն իրենց ծննդի, ապրած բարդ ուղու մասին: Այդ քարերը այբուբենի տառերի նման շարվելով՝ կկազմեն դարերի խորքից եկող մի ձեռագիր, որը մարդկությանը հայտնի կդարձնի ոչ միայն նրանց առաջացման պայմանների, այլև ծագման հաջորդականության մասին:

Երկրաբանը, իր հավաքած նյութերով, առայժմ կխոսի նստվածքային և արտավիժված ապարների առաջացման հաջորդականության մասին: Ավելի դժվար է, սակայն և հնարավոր, խոսել նրանց հասակի, այսինքն, թե երկրի պատմության ինչ հատվածում են առաջացել: Դրա համար կպահանջվի երկրաբանական ավելի մանրակրկիտ աշխատանք, մի յուրօրինակ պայքար բնության հետ, որը չի զլացել անցած ճանապարհին շաղ տալու իր օրինաչափությունները հաստատող ծանրակշիռ ապացույցներ: Դրանք միաբջիջ կենդանիներից և պարզագույն բույսերից մինչև անհետացած հսկաների և վիթխարի անտառների մնացորդներն են, որոնք պահպանվել են ապարների մեջ և պատմում են շերտերի հարաբերական հասակի մասին:

Դրանք յուրօրինակ ժամացույցներ են՝ բնության յուրօրինակ ձեռագրեր, որոնց վերծանելու պատվավոր գործը դրված է երկրաբանի վրա:

*ԱՐԱ ԴԱՎԹՅԱՆ*




## ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԲԻՈՌԻԹՄԵՐԸ ՀԱՇՎԵԼՈՒ ՍԱՐՔ

**Փաստեր կան, որ ծնված օրից մարդու օրգանիզմում կարևոր, պարբերական պրոցեսներ են տեղի ունենում: Օրինակ, զգացմունքային պարբերությունը 28 օր է կազմում: Մտավոր կարողությունները ուժեղանում և թուլանում են 33, իսկ ֆիզիկականը՝ 23 օրը մեկ: Այսպիսի երևույթների ճշգրիտ բացատրություն դեռ չկա, բայց վիճակագրությունը ցույց է տալիս, որ այդ շրջանները հաշվելը օգտակար է: Ավտոբուսի վարորդներին անբարենպաստ օրերին նպատակահարմար է հանգիստ տալ, մարզիկներին թեթևացնել մարզումների ծանրաբեռնվածությունը, հիվանդի վիրահատումը տեղափոխել այլ օր: Կրիտիկական գագաթների անզեն հաշվումը շատ աշխատատար գործ է: Պետք է հաշվել, թե քանի՞ օր է անցել ծննդյան օրից մինչև ներկա պահը, բաժանել այդ մեծությունը համապատասխանաբար 23-ի, 28-ի, 33-ի, և մնացորդում հայտնվող թիվը ցույց կտա շրջանի դրական գագաթի անցումը բացասականի և հակառակը:**

**Գորկի քաղաքի պատանիները ստեղծել են այդ գործողությունները հաշվող սարք: Բավական է մեքենային հաղորդել ծննդյան թիվը, տարիքը, և ամսաթիվը, որ մնացած հաշվումները մեքենան ինքը կատարի:**

Ի. ԲԵԼՈԲՐՈՎՑԵՎԱ

# ԴԻՆ ՃԱՆՏ ՀԵՇՏ ԲԱՆ Է



Մի անգամ Տալլին քաղաքը եկավ մի օտարերկրացի, որը մարդկանց մասին դատում էր նրանց գիտեցած լեզուների քանակով: Եվ քանի որ մարդկանց մեծ մասը հիմնականում երկուերեք լեզվով է խոսում, նա նրանց մասին այնքան էլ բարձր կարծիքի չէր: Իսկ ինքը, ա՜յ, 15 լեզու գիտեր:

Մի անգամ նրա մոտ բերին մի պիոներ տղայի: Օտարերկրացին անմիջապես հենծավ իր հաղթաձին և խոսեց անգլերեն: Տղան պատասխանեց: Ֆրանսերեն: Պատասխանեց: Գերմաներեն: Էլի՛ պատասխանեց: Իսպաներեն, իտալերեն, շվեդերեն, ֆիններեն... Նույնիսկ միջազգային էսպերանտո արհեստական լեզուն տղային չշփոթեցրեց: Մեջտեղ եկան տարաշխարհիկ լեզուներ՝ ճապոներեն, սուահիլի... Օտարերկրացու հոնքերը զարմանքից այնքան էին բարձրացել, որ ճակատի վրա համարյա տեղ չէր մնացել:

Մի խոսքով, օտարերկրացին ընդամենը մեկ լեզու ավելի գիտեր, և նման բան նրա հետ առաջին անգամն էր պատահում:

— Սա ի՞նչ երեխա է,— աղաղակեց բազմալեզու հյուրը:

— Սովորական երեխա է,— ժպտալով պատասխանեցին նրան:

Ռեյն Ռաուդը, որն այս տարի բոլորեց իր 18 տարին, ինչ խոսք, այնքան էլ սովորական տղա չէ: Ասենք, ինքը գտնում է, որ ամեն ոք կարող է իր նման լինել: «Պարզապես չէի սիրում բակում շատ թափառել»,— կես լուրջ կես կատակ ասում է նա: Ճիշտ է, նա համեմատաբար քիչ էր զբոսնում, բայց նրա մեջ ինչոր բան կա, որը 10 տարեկան հասակում նրան ստիպեց ֆիններեն լեզվի դասագիրք փնտրել (ֆիններենը շատ նման է էստոներենին, ինչպես ռուսերենը՝ բուլղարերենին): Ծնողները ապշեցին, երբ որոշ ժամանակ անց նրանց որդին խոսեց ֆիններեն:

Հենց այդ ժամանակ էլ Ռեյնը հասկացավ, որ լեզուն բանալի է: Եթե բացահայտես նրա գաղտնիքները, նա դռները լայնորեն կբացի դեպի այդ լեզվով խոսող ժողովրդի հոգին, գրականությունն ու մշակույթը: Եվ անմիջապես անցավ շվեդերենի ուսումնասիրմանը, որպեսզի կարդա անմոռանալի Կարլսոնի հեղինակ Աստրիդ Լինդգրենի բազմաթիվ գրքերը: Նույն ժամանակաշրջանում դպրոցում նա սովորում էր անգլերեն և ռուսերեն, և երբ տեսավ, որ լեզուները հեշտությամբ են տրվում, աննդհատ առաջ գնաց:

Չպետք է մտածել, թե Ռեյնը ոչ մի թերություն չուներ: Նա էլ թույլ կողմեր ուներ: Գծագրությու-

նըն, օրինակ, նա հաղթահարում էր միայն ու միայն համադասարանցիների օգնությամբ։

Այնուամենայնիվ նա զարմանալի մարդ է։ Ի՞նչն է նրա մեջ հատկապես անսովորը։ Կարելի է ասել՝ սիստեմայնությունը։ Նա գիտակցաբար և մեթոդիկ կերպով է լեզուներ սովորում։ Պետք է լսել միայն, թե ինչպես է նա լեզուն երկաբակյաց դարձնում։ Շատ կարևոր է լեզվի կյանքը երկարացնելը, այլապես կմոռանաս, ինչպես մոռացավ ինդոնեզերենը, թեև գիտեր։ Միշտ պետք է խոսել։

— Քայլում եմ հինավուրց Տալլինի փողոցներով և կարծես թե ֆրանսիացիների համար էքսկուրսիա եմ վարում,— պատմում է նա։— Ինքս ինձ պատմում եմ միջնադարյան քաղաքի ճարտարապետությ ա ն, նրա արվեստի, նրա կյանքի մասին, բոլորն, իհարկե, ֆրանսերեն։ Եվ ապա՝ երկար ժամանակ ճապոներենի բառարան էի փնտրում։ Մի անգամ գրախանութ մըտա, որտեղ երկու ճապոնացի ոչ մի կերպ վաճառողուհուն չէին կարողանում բացատրել, թե ի՞նչ է իրենց պետք։ Թարգմանեցի, գործը գլուխ եկավ, իսկ երբ մի երկու օր անց նույն գրախանութը մտա, վաճառողուհին ինձ մեկնեց այն հիերոգլիֆային բառարանը, որը ես շատ վաղուց փնտրում էի. «Դուք ճապոներեն գիտեք, սա գուցե ձեզ պետք գա»։

— Լեզուն արագ կարելի է յուրացնել, միայն թե ցանկանալ է պետք։ Հետո՝ սխալներից չպետք է վախենալ։ Սխալվելը փորձանք չէ։ Թող սկսվի ամենափոքրից։ Մենք դասարանով մի անգամ Վիլնյուս էքսկուրսիա գընացինք։ Մի ամբողջ օր գնացքով պետք էր գնալ, և ես ինձ հետ լիտվերեն լեզվի բառարան էի վերցրել։ Երեկոյան արդեն խոսում էի, ամենապարզ դարձվածքներով, իհարկե։

Ոմանք կարող են մըտածել՝ իսկ նրա ինչի՞ն է պետք այս բոլորը։ Գուցե յուրատեսակ կոլեկցիա՞ է, ինչպես, ասենք, նամականիշերի կամ կրծքանշանների։ Ո՛չ, Ռեյնը լեզուներ հավաքող չէ, նա երազում է այդ լեզուները ուրիշներին սովորեցնել։ Նա անկասկած մանկավարժական ջիղ ունի։ Նրա տասնամյա քույրը չինարեն արդեն կարողանում է ասել՝ «Իմ անունը Պիրետ է», եղբայրը՝ Միխքելը մի քիչ ֆիններեն գիտի։ Կամ էլ՝ իրենց դասարանը Լիտվա ճամփորդեց, Վիլնյուսի դպրոցականները փոխադարձաբար այցելեցին, և լիտվացի մի աղջիկ ոչ միայն խոսում էր էստոներեն, այլև թարգմանում էստոնացի երիտասարդ պոետների բանաստեղծությունները լիտվերեն։ Այսպես են ձգվում մարդկանց իրար կապող թելերը։ Հասկանալի է, որ առանց Ռեյնի գործը գըլուխ չէր գա։ Երկու տարի առաջ, երբ դեռ տասներվեց տարեկան դպրոցական էր, էստոներեն լեզվի դասագիրք կազմեց, քանի որ եղածները իրեն դուր չէին գալիս։ «Կրիայի պես են շարժվում,— նրանց մասին ասում է Ռեյնը,— հիմա մարդիկ այնքան ժամանակ չունեն, որ տարիներով լեզու սովորեն»։ Հենց իր կազմած այդ գրքով էլ նա սովորեցրեց բոլոր ցանկացողներին։ Եվ սովորեցնում է այնպիսի մոլեգնությամբ, ինչպես ինքն էր սովորում։

Լեզուն, սակայն, դեռ բոլորը չէ, կարևոր է ճանաչել ժողովրդին, նրա մշակույթը։ Դրա համար էլ Ռեյնը ագահորեն ձըգտում է շփվել ուրիշների հետ։

Մալի հանրապետությունից գրողներ են գա-

լիս Տալլին, ինչու՞ չսովորել նրանց մայրենի լեզուն՝ բամբարան: Հյուրերը ցնցված էին:

Կամ էլ՝ Ռեյնը ազգագրական արշավախմբի կազմում Կոլա թերակղզի է գնում սաամի ֆոլկլորը գրի առնելու: Եվ քանի որ գնալուց առաջ Ռեյնը սովորել էր նրանց լեզուն, բնիկները սիրահոժար զրուցում էին նրա հետ:

Իսկ այս տարի նա անհաղթահարելի ցանկություն ունեցավ բնագրով կարդալու հույն բանաստեղծ, Նոբելյան մրցանակի դափնեկիր Կավաֆիսի բանաստեղծությունները: Կարծում եք չկարդա՞ց: Ոչ միայն կարդաց, այլև էստոներեն թարգմանեց:

«Մեկ օրում սովորեցի», «արագ սովորեցի», «սովորեցի, որպեսզի բնագրով կարդամ»,— մի քիչ ֆանտաստիկ է հնչում, չէ՞: Մինչդեռ համաշխարհային հռչակ վայելող բուլղարացի հայտնի բազմալեզու Լոզանովը գտնում է, որ մարդը դեռ շատ ժլատ է օգտվում իր ահռելի հնարավորություններ ի ց, որը կարող է մեկ օրում 300 բառ սովորել: 300 բառ մեկ օրում: Ռեյնը դեռ այդքան չի կարող, բայց համառ կերպով ձգտում է դրան: Ինչպես տեսնում ենք, այստեղ ոչ մի ֆանտաստիկա չկա:

Ռեյնի հետ զվարճալի դեպքեր են պատահում: Մի երկու տարի առաջ էստոնացի մեծ գրող Ա. Խ. Տամմսաարեի ծննդյան 100-ամյակի տոնակատարությանը մասնակցելու համար Տալլին էր ժամանել Տաջիկստանի պատվիրակությունը: Ռեյնը, հասկանալի է, հնար գտավ նրանց հետ խոսելու: Հյուրերը սիրով էին պատասխանում, բայց մի տեսակ շփոթված էին: «Ի՞նչ է պատահել»,— մտածում էր Ռեյնը, մինչև որ նրան բացատրեցին, թե ինքը խոսում է դասական լեզվով, որը գործածական էր մի քանի դար առաջ: Ինչպես եթե մենք հիմա խոսեինք «Ասք Իգորի ճակատամարտի մասին» բիլինայի լեզվով: Հարկ եղավ թողնել դասական գրականության լեզվով սովորածը և հյուրերի հետ զրուցելու ընթացքում նորից սովորել լեզուն:

Ռեյնի համար լեզուները իրենց գեղեցիկ կողմերով, առանձնահատկություններով ու պարադոքսներով կենդանի երևույթներ են: «Լեզուն նույնիսկ ձեռագիր է թելադրում»,— ասում է նա: Տալլինի № 7 միջնակարգ դպրոցի ռուսաց լեզվի ուսուցչուհին մինչև օրս Ռեյնի անունը անտարբեր չի կարողանում լսել. նրա բոլոր գրավոր աշխատանքները գրվում էին սլավոնական խրթին զարդագրերով (հյուսագրերով):

—Լեզուն կենդանի է և նրան պետք է վերաբերվել ինչպես կենդանի էակի,— ավելացնում է Ռեյնը:

Ռեյնը դժվարանում է ասել քանի լեզու է հիմա իր մեջ ապրում: «Ամեն ինչ հարաբերական է. մեկով խոսում եմ, մյուսներով՝ կարդում, երրորդներով՝ գրում...»: Երբ հաշվեցինք այդ դասակարգումը, հոդվածը գրելու պահին, պարզվեց, որ Ռեյնը գիտի՝ ռուսերեն, ֆրանսերեն, իտալերեն, հունգարերեն, տաջիկերեն, ճապոներեն, բամբարա, անգլերեն, իսպաներեն, հունարեն, էսպերանտո, լիտվերեն, սուահիլի, սաամի, գերմաներեն, ֆիններեն, շվեդերեն, պարսկերեն (նաև հին պարսկերենը՝ փարսերենը): Իհարկե, չհաշված մայրենի էստոներենը:

Այն օտարերկրացին հիմա եթե Տալլին գար, հայտնի չէ, թե ինչով կըվերջանար նրանց զըրույցն այս անգամ: Ասենք, նա հիմա պետք է Լենինգրադ գա, որովհետև Ռեյնը հիմա քայլում է լենինգրադյան փողոցներով. 1980 թ. սեպտեմբերի 1-ից նա Լենինգըրադի պետհամալսարանի արևելյան ֆակուլտետի իրանական բաժանմունքի ուսանող է: Նույնիսկ այստեղ նրա պատրաստվածությունը (մի մոռացեք՝ ինքնապատրաստվածությունը) բարձր մակարդակ դրսևորեց՝ առաջին իսկ քննաշրջանից Ռեյնին ազատեցին պարսկերեն լեզվի հընչյունաբանությունից, այնքան լավ էր տիրապետում դրան: Ինչո՞վ է զբաղվում հնչյունաբանությունից ազատված ժամերին. Եգիպտոսի պատմության դասախոսություններին է հաճախում:

**Ինչ կա որ. չսովորած լեզուներ, անծանոթ մըշակույթներ դեռ շատ կան...**

*Թարգմ.*
*Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*




# ՔՈ ԱՎԱԳ ԵՂԲԱՅՐԸ

## ԴԵՊԻ ԳՈՐԾ



1954 թ. կոմերիտականները ջերմորեն արձագանքեցին խամ ու խոպան հողերը յուրացնելու կոչին և աշխատանքի մեկնեցին Ղազախստանի, Սիբիրի, Ուրալի, Հեռավոր Արևելքի շրջանները:



1958 թվականին Հայաստանի կոմերիտմիությունը պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով՝ երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում կատարած բեղմնավոր աշխատանքի և տնտեսական գործունեության մեջ ակտիվ մասնակցելու համար:



Հանրապետության կոմերիտական կազմակերպությունը ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրի արժանացավ նաև 1967 թվին՝ Տաշքենդի երկրաշարժից տուժած երեխաների ամառային հանգիստը կազմակերպելու գործում ակտիվ աշխա-



տանքի և 1971 թվի սեպտեմբերին երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության ասպարեզում մեծ աշխատանք կատարելու՝ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման և ՀԼԿԵՄ 50-ամյակի առթիվ:



Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետության կոմերիտականները խոշոր ավանդ ներդրեցին Հայաստանի ատոմակայանի, Արփա-Սևան կառույցի, Երևանի մետրոպոլիտենի, Մասիս-Նուռնուս երկաթուղագծի, Ախուրյանի ջրամբարի և այլ կառույցների շինարարության մեջ:

Հնգամյակի առաջին տարվա պարտավորությունները հաջող կատարելու համար հանրապետության կոմերիտական կազմակերպությունը 1977 թ. փետրվարին նույնպես պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով:



# ՍՏԵՂԾԵԼ ԵՆ

## ԱՍԵՂՆԱԲՈՒԺՈՒԹՅԱՆ ԵՐԿՐՈՐԴ ԾՆՈՒՆԴԸ

Արևելքի բժշկության հնագույն մեթոդը՝ ասեղնահարումը, իր երկրորդ ծնունդն է ապրում: Գիտության ժամանակակից մակարդակը օգնեց ասեղնահարվող կետերի շատ զարմանալի հատկություններ հայտնաբերել: Պատահական չէ, որ այդ կետերն այժմ անվանում են կենսաբանորեն ակտիվ կետեր: Հաստատված է, որ կետերի վիճակի փոփոխությունները համապատասխան ներքին օրգանների հիվանդագին շեղումների ցուցանիշներ են: Ըստեղծված են հատուկ սարքեր, որոնք օգնում են բժշկին ախտորոշել հիվանդությունը և բուժել հիվանդին այդ կետերի վրա ազդելով: Սեմիպալատինսկի բժշկական ինստիտուտի երիտասարդ աշխատակից Ն. Պ. Լյուբինը ստեղծել է հարմար սարք, որը չնայած իր փոքր չափերին, մեծ ֆունկցիոնալ ազդեցություն ունի: Այն կարող է ազդել ինչպես մարմնի, այնպես էլ ականջի խեցու մեջ գտնվող կետերի վրա: Բուժում է մի շարք հիվանդություններ:

# ԿՈՄԵՐԻՏԱԿԱՆՆԵՐԸ

## ՋՈՒՐԸ ՎԱՌԵԼԻՔ

Ջուրը՝ $H_2O$, սովորական պայմաններում կայուն, ջրածնի և թթվածնի պարզագույն քիմիական միացություն է, որը շնորհիվ իր տարածման և դերի, անհիշելի ժամանակներից համարվել է կյանքի սկզբնաղբյուր: Ջուրը համարել են կյանքը կազմող չորս տարրերից մեկը, որը ի հակադրություն կրակի, ցուրտ և խոնավություն է իր մեջ կրում: Ոչ վաղ անցյալում մարդիկ չէին պատկերացնի, որ ջուրը կարելի է օգտագործել որպես վառելիք:

Առաջին անգամ 1781—82 թվերին անգլիացի գիտնական Կավենդիշը սինթեզեց ջուր՝ էլեկտրական կայծով պայթեցնելով ջրածնի և թթվածնի խառնուրդը:

Այդ փաստը հետաքրքրեց կիևցի երիտասարդ նորարարներին: Նրանց ստեղծած «Ֆակել—1» սարքը փոխարինում է օգտագործման համար անհարմարավետ և վտանգավոր ջրածնի ու թթվածնի մատուցման նախկին սարքին: Նոր ստեղծված սարքը ավտոմատիկ կերպով թորած ջուրը վերածում է ջրածնի և թթվածնի ու ստեղծում շատ փոքր չափի այրիչի համար անհրաժեշտ գազային խառնուրդ: Մեկ ժամ անընդմեջ այրման համար բավական է 10 գրամ ջուր: Սարքը կարող է 16 ժամ շարունակ առանց ջուր ավելացնելու աշխատել:

1981 թ. ապրիլին ՀԼԿԵՄ Կենտկոմի 11-րդ պլենումում Հայաստանի կոմերիտմիությանը հանձնվեցին նոր պարգևներ՝ ՀամԼԿԵՄ Կենտկոմի տիեզերքում եղած հուշադրոշը՝ երիտասարդության կոմունիստական դաստիարակության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը՝ ՌՍՖՍՀ ոչ-սևահողային գոտու նկատմամբ շեֆական աշխատանքները լավ կազմակերպելու համար:





# Սահմանված է




Երկրագնդի մակերեսի միայն 30 տոկոսն է ցամաք, իսկ մնացածը ծածկված է համաշխարհային օվկիանոսի ջրերով: Այդ հսկա ավազանը պարունակում է 1,5 տրիլիոն խմ ջուր, որը գտնվում է անընդհատ շրջանառության մեջ: Ջուրն այն քանդակագործն է, որն իր մեխանիկական և քիմիական ազդեցության շնորհիվ քանդակել և ձևավորել է մեր մոլորակի մակերեսը: Առանց նրա, կենդանական կյանքն անհնարին է: Մարդու և կենդանիների օրգանիզմի մոտ 65 տոկոսը ջուր է, իսկ առանձին հյուսվածքներում, օրինակ՝ արյան բաղադրության մեջ, ջրի քանակը հասնում է 95 տոկոսի:

Բայց մենք այդ կենսական նյութին այնքան ենք սովորել, որ ոչ ոք ջուր խմելիս և ջուր օգտագործելիս չի մտածում նրա արժեքի մասին: Եվ միայն ջուր չլինելու դեպքում է այն մարդու համար դառնում կարևոր: Գիտնականները հաշվել են, որ նախամարդն իր ողջ կյանքում օգտագործում էր ընդամենը 400 խմ ջուր, այն դեպքում երբ ժամանակակից մարդը նույնչափ ծախսում է 2-3 տարում, օրական օգտագործելով մոտ 400 լիտր: Այդ քանակից 1,5-2 լիտրը խմելու բաժինն է, 2-3 լիտրը ճաշ պատրաստելու, իսկ մնացածը ծախսում է տարբեր կենցաղային կարիքների վրա:

Խմելու ջրի նկատմամբ մարդիկ առաջադրում են երկու բացարձակ պահանջ՝ այն չպետք է պարունակի թույներ և տարբեր հիվանդությունների հարուցիչներ, բացի այդ հնարավորության սահմաններում պետք է լինի մաքուր, թափանցիկ, անգույն, պաղ, (+7° մինչև +12°), ունենա համապատասխան աղային բաղադրություն, զուրկ լինի օրգանական խառնուրդներից և այլն:

## ՖՈՒՏԲՈԼԱՅԻՆ ՄՐՑԱՎԱՐԻ ՍՈՒԼԻՉԸ

Մինչև 1878 թվականը ֆուտբոլային մրցավարը չէր վազվզում դաշտում ինչպես հիմա, այլ վարում էր խաղը տրիբունայից՝ բազկաթոռին բազմած: Սակայն այնտեղից կանոնների ամեն խախտում չէ, որ հնարավոր էր նկատել, դրա համար էլ որոշվեց մրցավարին դաշտ իջեցնել: Եվ հենց այստեղ էլ սպորտի պատմության համար ուսանելի միջադեպ տեղի ունեցավ: Մի անգամ խաղը վարում էր մի ոստիկան: Եվ այնպես պատահեց, որ հենց այդ խաղի ժամանակ դաշտում բուռն քաշկռտուք սկսվեց: Մրցավարն իրեն չկորցրեց. ժամանակին հիշելով իր ծառայողական պարտականությունները, գրպանից հանեց ոստիկանական սուլիչը, և դաշտով մեկ հնչեց սպառնալից սուլոցը: Կռվարարները հանկարծակիի եկան, շշկլած կանգնեցին, և կարգուկանոնը արագ վերականգնըվեց: Հենց այդ ժամանակվանից էլ ֆուտբոլային բոլոր մրցավարները «զինվեցին» սուլիչներով:

# խմելու ջրի տասնամյակ

**Խմելու** համար օգտագործվող ջրերը պարբերաբար ենթարկվում են ստուգման, որոշ դեպքերում նրանց ավելացնում են յոդ, ֆտոր՝ կանխարգելելու համար վերջիններիս անբավարարությամբ պայմանավորված հիվանդությունները:

Հայաստանի տարածքում հայտնի են անթիվ կոթողներ, սեպագիր արձանագրություններ, ջրանցքներ, որոնք անվերապահ վկայում են, որ Հայոց աշխարհը հանդիսանում է ջրամատակարարման կառույցների հնագույն օջախներից մեկը: Այդ են վկայում նաև ջրաստվածներ՝ «վիշապների» քանդակները: Հատկանշական է և այն, որ մեր հեքիաթ-երազանքների հերոսները հաճախ կռվել և յոթգլխանի դևերից ետ են խլել նրանց հափշտակած խմելու ջուրը:

Ի միջի այլոց, բանից պարզվում է, որ հնում էլ են եղել ջրերի ոչ բարեխիղճ օգտագործողներ, այդ է վկայում Տուշպա (Վան) քաղաքի կառավարիչ, Բիայնիլիի հզոր թագավոր Մենուայի անեծք-արձանագրությունը՝ 27 դար առաջ տեղադրած «Շամիրամի առու» կոչվող ջրանցքի ակունքի մոտ:

Չնայած մենք հարուստ ենք քաղցրահամ ջրերով, բայց և այնպես արդեն իսկ զգացվում է նրա մտածված և խնայողաբար օգտագործման անհրաժեշտությունը: 2000 թվին զգալիորեն կավելանա մի մարդուն ընկնող ջրի ծախսը: Ուրեմն այսօր արդեն մենք պետք է հաշվենկատ լինենք ջրի հարցում:

Ոչ միայն մեզ մոտ, այլև ամբողջ աշխարհում այժմ պայքար է ծավալվել ջրերի նպատակահարմար և խնայողաբար օգտագործման համար, քանի որ մեկ միլիարդ մարդ հենց այժմ կանգնած են ջրամատակարարման դժվարության առաջ: Այդ պատճառով 1981—1990 թթ. ՄԱԿ-ի նախաձեռնությամբ հայտարարված է խմելու ջրի տասնամյակ:

*ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ*

*բժիշկ, կենսաբանության թեկնածու*

- Կանաչ տարածությունները արգելակում են հիվանդահարույց միկրոօրգանիզմների զարգացմանը: Հետազոտությունները ցույց են տալիս, որ մեկ հեկտար տնկարկը քաղաքներում կարող է զտել, մաքրել և մարդու համար անվտանգ դարձնել տարեկան 50-70 տոննա փոշի:

- Երկար ժամանակ սպիտակ արջին համարում էին ամենացրտադիմացկուն կենդանին: Սակայն Նորվեգիայում կատարած փորձերը ցույց տվին, որ առաջին տեղում է բևեռային բադը, որը դիմացել է 110 աստիճան ցրտի: Սպիտակ արջը դիմանում է 80 աստիճան ցրտի և գրավում է չորրորդ տեղը, սագերից և ծովափոկերից հետո:






ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ.

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15 ул. Кармир банаки, № 15.

## № 10 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին և չորրորդ էջերը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱՇԱՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 31. 7. 1981 թ.։ Ստորագրված է տպագրության 15. 10. 1981 թ.։ ՎՖ 05824։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն։ 3,9 պայմ. մամ., 3.1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61160։ Պատ. 1855։ Գինը 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.




# ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՏԱՐԵԹՎԵՐՈՒՄ

Խաչբառի վանդակները լրացրեք Հայաստանի լենինյան կոմերիտմիության պատմության հետ կապված հիշարժան տարեթվերով:



ԴԵՊԻ ԱՋ

I Հրազդան գետի գեղատեսիլ ափին հանդիսավոր պայմաններում տեղի ունեցավ մանկական երկաթուղու բացումը:

II Կոմերիտմիությունը պարգևատրվեց Կարմիր դրոշի առաջին շքանշանով:

III Ղուկասավան գյուղում բացվեց Հայաստանի կոմերիտմիության պատմության թանգարանը:

IV Սկսվեց Արփա-Սևան ջրատարի շինարարությունը:

V Տեղի ունեցավ ՀԼԿԵՄ 12-րդ համագումարը:

VI Տեղի ունեցավ Զորագէսի հանդիսավոր բացումը:

VII Որոշում ընդունվեց Հայաստանի կոմերիտմիությունը վերանվանել Հայաստանի լենինյան կոմերիտմիություն:

VIII Երևանում հիմնադրվեց «Սպարտակ» երիտասարդական կոմունիստական կազմակերպությունը:

ԴԵՊԻ ՁԱԽ

I Հիմնադրվեց ՀամԼԿԵՄ-ը:

II Երևանում բացվեց Ղուկաս Ղուկասյանի հուշարձանը:

III Հայ ժողովրդի դյուցազուն զավակ Հունան Ավետիսյանին ետմահու շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

IV Հանդիսավոր կերպով նշվեց ՀԼԿԵՄ 50-ամյակը:

V Լույս տեսավ ՀԼԿԵՄ Կենտկոմի և Հայաստանի գրողների միության օրգան «Գարուն» ամսագրի առաջին համարը:

VI Հունան Ավետիսյանի անմահության փառքի օրինակը կրկնեց Զանգեզուրի Տաթև գյուղի զավակ, կոմերիտական Սուրեն Առաքելյանը:

VII Կազմվեց առաջին կոմերիտական տրակտորային շարասյունը:

VIII Լույս տեսավ «Պատկոմ» ամսագրի առաջին համարը:

Կազմեց ՅՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ

